# **«Լիր թագավորի ողբերգությունը»**

“The Tragedy of King Lear”

THE TRAGEDY OF KING LEAR

Ուիլյամ Շեքսպիրի

[1603]

*Թարգմանությունը՝ Լիլիթ «Բաբա» Եազյանի [1978]*

“O, let me kiss that hand!”
“Let me wipe it first; it smells of mortality.”

## DRAMATIS PERSONÆ

LEAR, King of Britain.
GONERIL, Eldest daughter to Lear.
REGAN, Second daughter to Lear.
CORDELIA, Youngest daughter to Lear.
DUKE of ALBANY, Married to Goneril.
DUKE of CORNWALL, Married to Regan.
KING of FRANCE.
DUKE of BURGUNDY.
EARL of GLOUCESTER.
EDGAR, Elder son to Gloucester.
EDMUND, Younger bastard son to Gloucester.
EARL of KENT.
JOKER, Lear's Fool.
OSWALD, Steward to Goneril.
CURAN, a Courtier.
OLD MAN, Tenant to Gloucester.
Physician.
An Officer employed by Edmund.
Gentleman, attendant on Cordelia.
A Herald.
Servants to Cornwall.
Knights attending on the King, Officers, Messengers, Soldiers and Attendants.

# ԼԻՐ ԱՐՔԱ

ACT I. SCENE I.
A room in King Lear's Palace. Kent, Gloucester and Edmund enter.

KENT.
Ես կարծում էի, թէ թագաւորը Ալբանիի դուքսին աւելի է սիրում, քան թէ Կորնուալին։

GLOUCESTER.
Մեզ էլ միշտ այդպէս էր թւում, բայց այժմ, երբ նա բաժանում է իր թագաւորութիւնը, ամենեւին չի երեւում, թէ դուքսերից ո՛ր մէկին է աւելի գնահատում, որովհետեւ բաժինները այնպէս հաւասար են կշռուած, որ բծախնդրութիւնն անգամ չի կարող գերադասել մէկի բաժինը միւսից։

KENT.
Արդեօք սա ձեր որդին չէ՞, միլորդ։

GLOUCESTER.
Այո՛, պարոն, նրան ես եմ մեծացրել։ Այնքան յաճախ կարմրել եմ ես նրան որդի ճանաչելուս համար, որ հիմա երեսս պնդացել է։

KENT.
Ես ձեզ չեմ հասկանում։

GLOUCESTER.
Իսկ այս պատանու մայրը ինձ լաւ էր հասկանում, այնքա՜ն լաւ, որ փորը կլորացաւ, եւ ունեցաւ մի զաւակ իր օրօրոցում, նախքան մի ամուսին՝ իր անկողնում։ Հասկացա՞ր յանցանքը։

KENT.
Ես չէի կամենայ, որ այդ յանցանքը կատարուած չլինէր, քանի որ արգասիքն այսքան գեղեցիկ է։

GLOUCESTER.
Բայց, տէր իմ, ես ունեմ մի օրինաւոր զաւակ՝ մի քանի տարով աւելի մեծ, որը, սակայն, իմ աչքում աւելի սիրելի չէ, քան սա, թէեւ այս անպիտանը մի քիչ աներեսութեամբ աշխարհ եկաւ, նախքան նրան կը կանչէին։ Բայց մայրը սիրուն էր, եւ մենք այնքան զուարճանում էինք սրան արտադրելիս, որ

այժմ պարտաւոր եմ ճանաչել այս քածի ձագին։- Ճանաչո՞ւմ ես այս ազնիւ պարոնին, Էդմոնդ։

EDMUND.
Ոչ, տէր իմ։

GLOUCESTER.
ՔԷնտի կոմսն է։ Այսուհետեւ լաւ յիշիր նրան՝ որպէս իմ յարգելի բարեկամիս։

EDMUND.
Ծառայ եմ ձերդ յարգութեան։

KENT.
Ես ձեզ շատ կը սիրեմ եւ յոյս ունեմ, որ աւելի լաւ ծանօթանանք։

EDMUND.
Տէր իմ, ես կ՝աշխատեմ արժանի լինել այդ պատուին։

GLOUCESTER.
Ինը տարի է, որ նա օտարութեան մէջ է եղել, հիմա էլ կրկին գնալու է։ Թագաւորը գալիս է։

*[Lear, Cornwall, Albany, Goneril, Regan and Cordelia enter.]*

LEAR.
Գլոստեր, գնա ընկերացիր Ֆրանսիայի թագաւորին եւ Բուրգոնդի դուքսին։

GLOUCESTER.
Պատրաստ եմ, տէր արքայ։

*[Gloucester and Edmund exit.]*

LEAR.
Իսկ այդ միջոցին մենք պիտի յայտնենք աւելի թաքուն մեր նպատակը։ Տուէ՛ք քարտէզը։ Թող ձեզ յայտնի լինի, որ բաժանել ենք մեր պետութիւնը երեք մասերի եւ վճռել հաստատ՝ ցնցել ամէն հոգ եւ աշխատութիւն մեր ծերութիւնից եւ յանձնել դրանք մեզնից աւելի կայտառ ուժերի, այնինչ ինքներս թեթեւանալով կը սողանք դէպ մահ։ Մեր որդի Կորնուալ, եւ նոյնչափ սիրելի որդի Ալբանի, մենք որոշել ենք յայտնել այժմուանից մեր աղջիկների օժիտն այլեւայլ, որ ապագայում որեւէ վէճի առիթ չմնայ։ Ֆրանսիայի արքան եւ բուրգոնդացին՝ մեծ մրցակիցներ մեր փոքր աղջկայ սիրոյ պայքարում, վաղուց ի վեր է, որ սպասում են սիրային յոյսով մեր արքունիքում, եւ, արդ, պատասխան պէտք է տալ նրանց։ Բայց ասացէ՛ք ինձ, իմ աղջիկներս (քանի որ շուտով թօթափելու ենք թէ՛ իշխանութիւն, թէ՛ երկրի

շահեր եւ թէ՛ պետութեան հոգածութիւններ), ձեզնից ո՞ր մէկը, կարող ենք ասել, ունի դէպի մեզ աւելի մեծ սէր, որ մենք էլ սփռենք աւելի բարիք, ուր որ արժանիքն առաւել չափով հանդիսանում է բնութեան մրցակից։ Առաջ, Գոներիլ, մեր անդրանիկը, առաջ դու՛ խօսիր։

GONERIL.
Ես ձեզ սիրում եմ, տէր իմ, առաւել, քան թէ բառերը կարող են յայտնել, եւ դուք ինձ համար թանկ էք առաւել, քան թէ աչքի լոյս, օդ, ազատութիւն, քան ամենայն ինչ, որ համարւում է ճոխ եւ հազուագիւտ. ես ձեզ սիրում եմ որչափ որ կեանքը՝ լի երջանկութեամբ, փառքով ու պատւով եւ գեղեցկութեամբ եւ առողջութեամբ. ես ձեզ սիրում եմ, որչափ երբեւէ զաւակ սիրել է, կամ թէ հայր՝ սիրուել, մի սէր, որի մօտ տկար է շունչը, եւ խօսքը՝ անզօր։ Մի խօսքով՝ առաւել, քան թէ չափելի որեւէ սահման սիրում եմ ես ձեզ։

CORDELIA.
[Aside.] Էլ ի՞նչ կարող է կորդելիան խօսել։ Սիրել եւ լռել։

LEAR.
Այս սահմաններին՝ այս գծից այս գիծ, լի անտառներով՝ խիտ ու հովաշուք, հարուստ դաշտերով, առատ գետերով եւ անծայրածիր մարգարօտներով, ես ձեզ տիրուհի նշանակում եմ. թող ալբանիի եւ քո սերնդիդ պատկանեն նրանք մինչեւ յաւիտեան։ Այժմ ի՞նչ է ասում երկրորդ աղջիկս՝ կորնուալի կին քաղցրիկ Ռեգանս։

REGAN.
Ես յօրինուած եմ միեւնոյն նիւթից, որից իմ քոյրը, եւ իմ արժէքը գնահատում եմ նրա՛ արժէքով. եւ ես գտնում եմ իմ անկեղծ սրտում բոլոր այն սէրը, որ նա բացատրեց։ Սակայն դեռ քոյրս բաւական չասաց. ես ինձ թշնամի յայտարարում եմ բոլոր զանազան այն վայելքների, որ զգայութեանց նրբագոյն մասը կարող է մեզ տալ. եւ գտնում եմ ինձ երջանիկ՝ միայն այն երանութեամբ, որ տալիս է ինձ ձեր անգին սէրը։

CORDELIA.
[Aside.] Ուրեմն վա՜յ քեզ, աղքա՜տ Կորդելիա. բայց ո՜չ, ո՜չ աղքատ, քանզի վստահ եմ, որ սէրս մեծ է, քան թէ իմ լեզուն։

LEAR.
Քեզ եւ սերնդիդ, իբր ժառանգութիւն, թող մեր գեղեցիկ թագաւորութեան այս երկրորդ մասը մնայ յաւիտեան, ոչնչով պակաս՝ ո՜չ տարածութեամբ, ո՜չ գեղեցկութեամբ եւ ո՜չ արժէքով, քան Գոներիլին վիճակուած մասը։ Այժմ դու՛ խօսիր, մեր ուրախութիւն։ Թէեւ վերջինը, բայց ոչ չնչինը, որի դեռափթիթ սիրոյ պատճառով ֆրանսիայի որթը, բուրգոնդի կաթը մրցակից են այժմ, ի՞նչ պէտք է ասես, որով ստանաս մի երրորդ բաժին՝ աւելի շքեղ, քան քոյրերինդ։

CORDELIA.
Ոչինչ, տէր։

LEAR.
Ոչի՞նչ։

CORDELIA.
Ոչինչ։

LEAR.
Ոչնչից միայն ոչինչ դուրս կը գայ։ Խօսիր դու կրկին։

CORDELIA.
Ի՜նչ դժբախտ եմ ես, որ անկարող եմ բարձրացնել սիրտս մինչեւ շրթունքս։ Ես ձեզ սիրում եմ, ինչպէս իմ պարտքն է. ո՛չ աւել, ո՛չ պակաս։

LEAR.
Այդ ի՞նչ է, Կորդելիա, քիչ ուղղիր խօսքդ, թէ չես կամենում բախտդ փչացնել։

CORDELIA.
Ո՛վ բարի հայր իմ, դուք ինձ ծնել էք, կրթել եւ սիրել։ Դրանց փոխարէն, ինչպէս որ հարկն է, հատուցանում եմ. ձեզ հնազանդում եմ, սիրում եմ, յարգում։ Ինչո՞ւ իմ քոյրերս ամուսին ունեն, եթէ իսկապէս լոկ ձեզ են սիրում։ Եթէ պատահմամբ ես ամուսնանամ, նա, որի ձեռքը կը ստանայ ինձնից իմ առհաւատչեան, կը տանի իր հետ կէսն իմ սիրոյս, պարտքիս ու խնամքիս։ Եթէ սիրէի իմ հօրը միայն, ես չէի պսակուի քոյրերիս նման։

LEAR.
Միթէ՞ սիրտդ էլ խօսքերիդ պէս է։

CORDELIA.
Այո՛, ազնիւ տէր։

LEAR.
Այսքան մանկահաս, եւ այսքան անսէ՞ր։

CORDELIA.
Այսքան մանկահաս, տէր իմ, եւ անկեղծ։

LEAR.

Թող այդպէս լինի, անկեղծութիւնդ լինի քեզ օժիտ։ Վկա՛յ արեւի սուրբ ճառագայթը, հեկատի խորհուրդն ու մութ գիշերը. ազդեցութիւնքը երկնագնդերի, որոնցով ծնւում կամ մահանում ենք, ահա այսուհետ զլանում եմ ես ամէն հայրական խնամատարութիւն, ամէն արեան կապ, ազգականութիւն, եւ այս րոպէից օտար ես այլեւս ինձ եւ իմ սրտիս։ Բարբարոս սկիւթը կամ նա, որ ուտում է իր զաւակներին՝ իր ախորժակը փակելու համար, կը լինի կրծքիս աւելի մօտիկ եւ կը գտնի գութ ու կարեկցութիւն, աւելի, քան դու, իմ նախկին դուստրը։

KENT.

Տէ՛ր արքայ։

LEAR.

Լռի՛ր, Քէնտ, մի՛ մտնիր վիշապի եւ իր կատաղութեան մէջ. ես սիրում էի նրան ջերմագին եւ յոյս ունէի գտնել հանգիստս նրա կաթոգին խնամքների մէջ։ [To Cordelia.] Հեռո՛ւ այստեղից, աչքիս չերեւա՛ս ինչպէս որ ճիշտ է, որ գերեզմանում կը գտնեմ հանգիստ, նոյնպէս եւ ճիշտ է, որ այժմ նրանից ես ետ եմ առնում հայրական սիրտս։ Կանչեցէ՛ք ֆրանսիացուն։ Ո՞վ է կանչելու։ Բերեցէք այստեղ բուրգոնդի դուքսին։ Կորնուա՛լ, Ալբանի՛, իմ երկու աղջկանց օժիտների հետ մարսեցէք նաեւ այս երրորդ մասը։ Թող գոռոզութիւնը, որ նա կոչում է պարզախօսութիւն, նրան կին առնի։ Ես ձեզ եմ յանձնում իշխանութիւնս, դրա հետ մէկտեղ՝ նախապատուութիւն եւ բոլոր այն լայն իրաւունքները, որոնք յատուկ են թագաւորութեան։ Իսկ մենք, պահելով մի հարիւր ասպետ, որոնց ապրուստը դուք պէտք է հոգաք, կը մնանք հերթով ամէն մէկիդ մօտ։ Մենք մեզ պահում ենք մի թագաւորի անունը միայն եւ տիտղոսները. իսկ իշխանութիւն, հասոյթ, վարչութիւն, սիրելի որդիք, ձերն են այսուհետ։

KENT.

Ո՛վ վեհափառ Լիր, միշտ պատուել եմ ձեզ՝ իբր իմ արքայի, սիրել իբրեւ հայր եւ միշտ հետեւել, միշտ ձեզ եմ յիշել իբր իմ պաշտպանի—

LEAR.

Աղեղը լարուած եւ խիստ ձգուած է. խուսափիր նետից։

KENT.

Ոչ, թող սլանայ, սլաքը թէկուզ սրտիս մէջ մխուի. անքաղաքավար լինի թող Քէնտը, երբ Լիրը խենթ է։ Ի՞նչ ես անում, ծերու՛կ, կարծում ես՝ պարտքը կ՝երկնչի՞ խօսել, երբ խոնարհւում է իշխանութիւնը քծնանքի առջեւ։ Ազնուութիւնը պարտաւորուած է պարզախօս լինել, երբ կորանում է վեհափառութիւնը դէպ անմտութիւն։ Վճիռդ ե՛տ առ եւ քո լաւագոյն նկատառութեամբ փոխի՛ր հրէշաւոր այդ բիրտ հրամանը։ Թող կեանքս խօսքիս գրաւական լինի, քեզ փոքր աղջիկդ պակաս չի սիրում, քան թէ միւսները։ Անսիրտ չեն նրանք, որոնց ցած ձայնը չի որոտացնում մի խուլ արձագանք։

LEAR.
Քէնտ, ի գին կեանքիդ, լռիր։

KENT.
Իմ կեանքը, արքայ, ես պահել եմ միշտ որպէս գրաւական՝ ոսոխներիդ դէմ դուրս գալու համար, եւ չեմ վախենում կորցնել նրան, երբ պահանջում է քո՛ փրկութիւնը։

LEAR.
Կորի՛ր իմ աչքից։

KENT.
Աչքդ բաց, ո՛վ Լիր, եւ թող դեռ մնամ աչքիդ յարատեւ կէտ նպատակին։

LEAR.
Ապոլլոնը վկա՛յ ։

KENT.
Ո՛վ արքայ, իզուր երդւում ես անում քո աստուածներով։

*[Lear lays a hand on his sword.]*

LEAR.
Ստրու՛կ, անհաւա՛տ։

ALBANY and CORNWALL.
Խնայեցէք, տէր արքայ։

KENT.
Մեռցրու բժշկիդ, իսկ նրա վարձը տուր այդ ժանտ ախտիդ։ Ե՛տ առ քո բաշխած այդ պարգեւները. եթէ ոչ, քանի հնար ունեմ ես այս իմ կոկորդից աղմուկ հանելու, ես քեզ կը կրկնեմ, որ վատ ես անում։

LEAR.
Լսի՛ր, անիրաւ, յանուն քո ուխտած հպատակութեան՝ ականջ դիր դու ինձ. քանի որ դու այժմ ջանքեր արեցիր մեզ բեկանել տալ մեր արած ուխտը (ինչ որ մենք երբեք չենք համարձակուել), քանի որ անչափ քո գոռոզութեամբ միջամտեցիր մեր իշխանութեան եւ վճռի միջեւ (որ ո՛չ մեր բնոյթը, ո՛չ աստիճանը կարող են ներել), ճաշակի՛ր ուրեմն մեր զօրութիւնը. վարձդ ստացիր։ Մենք շնորհում ենք քեզ միայն հինգ օրուայ մի պայմանաժամ, որով աշխարհի տառապանքներից քեզ ապահովես, իսկ վեցերորդին՝ այդ պիղծ կռնակդ մեր երկրին դարձնես. եթէ հետեւեալ տասներորդ օրը վտարուած լեշդ գտնուի դեռեւս մեր պետութեան մէջ, այդ րոպէն քեզ մահ է։ Կորի՛ր իմ աչքից. Արամազդը վկայ,

խօսքս անդարձ է։

KENT.

Մնաս բարով, արքայ, այժմ, երբ ուզում ես այսպէս ընթանալ, ազատութիւնը այստեղից դուրս է, եւ աքսորն՝ այստեղ։ [To Cordelia.] Իսկ դու՛, մանկամա՛րդ, թող աստուածները քեզ պատսպարեն, դու ճիշտ խորհեցիր եւ ճիշտ խօսեցիր։ [To Reagan and Goneril.] Թող ձեր գործերը համեմատ լինեն ձեր մեծ ճառերին, բարի արդիւնքներ ծնուեն սիրային ձեր այդ խօսքերից։ Այսպէս, իշխաններ, Քէնտը բոլորիդ հրաժեշտ է ասում, նա պէտք է ձեւի իր հին բնոյթը նոր հայրենիքի։

*[As Kent exits Gloucester enters with France, Burgundy and Attendants.]*

GLOUCESTER.

Ահա Ֆրանսիայի եւ Բուրգոնդիայի իշխաններն եկան, իմ ազնիւ արքայ։

LEAR.

Իշխան Բուրգոնդի, նախ ձեզ ենք դիմում, որ մրցակից էք այս արքայի հետ մեր դստեր համար։ Ինչ՞ առնուազն օժիտ էք խնդրում իմ աղջկայ հետ, եւ առանց որի կը դադարէիք ձեր սիրոյ խոյզը։

BURGUNDY.

Ձերդ արքայական վեհափառութիւն, ես չեմ պահանջում աւելի, քան այն, ինչ առաջարկեց ձեր մեծութիւնը, ոչ էլ պէտք է դուք պակաս շնորհէք։

LEAR.

Գերազնիւ Բուրգոնդ, երբ որ մեր սրտին նա սիրելի էր, նրա գինն այդ էր. բայց, արդ, ընկել է նրա արժէքը. տէր իմ, ահա նա կանգնած է այդտեղ. եթէ այդ փոքրիկ, գեղաձեւ մարմնից մի մաս կամ ամբողջն, իմ ատելութեամբ միայն օժտուած, եւ ոչինչ աւելի, ձերդ բարձրութեան հաճելի լինի, առէք, ձերն է նա։

BURGUNDY.

Ինչ՞ պատասխանեմ։

LEAR.

Տէր իմ, ահա նա, այն արատներով, ինչ որ նա ունի. որբ, անբարեկամ, նոր որդեգիրը մեր ատելութեան, մեր անէծքներով միայն օժտուած եւ մեր երդումով մեզ օտարացած. ուզո՞ւմ էք նրան, թէ՞ բաց էք թողնում։

BURGUNDY.

Ներող եղէք ինձ, վեհափառ տէր իմ, ոչ մի ընտրութիւն չի կարող լինել այդ պայմաններով։

LEAR.
Թողէք ուրեմն, քանզի, երդւում եմ այն կարողութեամբ, որ ինձ ստեղծեց, ես ձեզ յայտնեցի նրա բոլոր ինչքը։

*[To the King of France.]*

LEAR [cont.]
Իսկ դուք, մեծ արքայ, ես չէի ուզի ձեր սէրն անարգել՝ ձեզ զուգորդելով իմ ատածիս հետ. խնդրում եմ, ուրեմն, ձեր սէրը դարձրէք աւելի արժան առարկայի վրայ, քան մի թշուառի, որին բնութիւնը գրեթէ խպնում է իւրը համարել։

FRANCE.
Զարմանալի՜ է. նա, որ քիչ առաջ ամէնից սիրելի ձեր առարկան էր եւ գովեստների ձեր բնաբանը եւ բալասանը ձեր զառամութեան, ամէնից լաւը, ամէնից սիրելին, ինչպիսի՜ հրէշաւոր մի յանցանք գործեց մի ակնթարթում, որ այդպէս զրկուեց այնքան ծալէծալ ձեր շնորհներից. անշուշտ, այդ մեղքը խի՜ստ անբնական եղած կը լինի եւ խի՜ստ հրէշաւոր. եւ կամ ձեր նախկին հաւաստած սէրը խի՜ստ անտեղի էր, եւ նրա կողմից այդպիսի մի բան կարծելու համար պէտք է մի հաւատք, որ, առանց հրաշքի, դատողութիւնը չի կարող տալ ինձ։

CORDELIA.
Աղերսում եմ ես ձեր մեծութիւնից մի վերջին շնորհ. թէ մեղքս այն է, որ չունեմ սահուն, ողորկ արուեստը այլ բան ասելու եւ այլ՝ խորհելու (քանզի այն, ինչ որ իմ բարի կամքն է, ես այն գործում եմ, նախքան թէ խօսել). խնդրում եմ ուրեմն, որ յայտարարէք, որ ո՜չ մոլի բիծ, ո՜չ սպանութիւն, ո՜չ մի գարշութիւն, ո՜չ լկտի մի գործ կամ քայլ անպատուիչ չեն եղել պատճառ՝ ինձ ձեր շնորհից զրկելու համար։ Այլ քանզի չունեմ այնպիսի մի բան, որի չքութիւնը հարստութիւն է. մշտաղերս մի աչք, այնպիսի լեզու, որը չունենալս ինձ տուժել տուեց ձեր սէրն հայրական։

LEAR.
Աւելի լաւ էր՝ ծնուած չլինէիր, քան այս աստիճան քեզ ատել տայիր։

FRANCE.
Հէնց ա՞յդ է միայն։ Վա՜հ, բնութեան մէջ մի դանդաղութի՜ւն, որ մերթ թողնում է առանց ասելու այն պատմութիւնը, որ պէտք է պատմէր։ Իշխա՜ն Բուրգոնդի, դուք ի՞նչ էք ասում այս օրիորդին։ Սէր չէ այն սէրը, որի մէջ խառն են ա՜յլ նկատումներ, որոնք անջատ են բուն նպատակից. ուզո՞ւմ էք նրան, իր օժիտն ինքն է։

BURGUNDY.
Ո՜վ Լիր վեհափառ, տուէք ինձ միայն, ինչ որ խոստացաք, եւ նրա ձեռքից կը բռնեմ իսկոյն եւ Բուրգոնդիայի դքսուհի կ՝անեմ։

LEAR.
Ոչինչ, երդուել եմ, անդրդուելի եմ։

BURGUNDY.
[To Cordelia.] Ափսոս, որ այսպէս կորցնելով մի հայր՝ դուք պէտք է կորցնէք եւ մի ամուսին։

CORDELIA.
Տէր ընդ ձե՛զ, ով դուքս, երբ որ ձեր սէրը լոկ հարստութեան հաշիւ է միայն, ես էլ ձեր կինը լինել չեմ կարող։

FRANCE.
Չքնաղ Կորդելիա, դու շա՛տ հարուստ ես, որչափ էլ աղքատ. թէպէտեւ լքուած, բայց չնաշխարհիկ, թէեւ անարգուած, սակայն պաշտելի. ես տէր եմ կանգնում քեզ եւ քո բոլոր առաքինութեան. թող ինձ թոյլ տրուի առնել ինձ համար՝ արհամարհուածին։ Աստուածնե՛ր, աստուածնե՛ր, զարմա՛ցք, որ նրանց սառն անարգանքից իմ սէրս վառւում եւ բորբոքւում է։ [To Lear.] Ո՛վ արքայ, այդ քո դուստրը անօժիտ, որ դուրս է գցուած իմ բախտիս առջեւ, թագուհի է մեզ, մերայինների եւ մեր գեղանի Ֆրանսիայի վրայ, բոլոր դուքսերը ջրուտ բուրգոնդի չեն կարող գնել այս չգնահատուած անգին կոյսն ինձնից։ [To Cordelia.] Կորդելիա՛յ, սրանց մնաք բարով ասա, թէեւ դաժան են։ Կորցնելով այս տեղը՝ դու գտնելու ես առաւել լաւը։

LEAR.
Նա քոնն է, ֆրանսիացի. քեզ լինի, մենք չունենք այդպիսի աղջիկ եւ նրա դէմքը էլ չենք տեսնելու։ Գնա, ուրեմն, առանց մեր շնորհի, առանց մեր սիրոյ, առանց օրհնութեան։ Ե՛կ, ազնիւ Բուրգոնդ։

*[Lear, Burgundy, Cornwall, Albany, Gloucester and Attendants all exit.]*

FRANCE.
Մնաք բարով ասա քո քոյրերիդ էլ։

CORDELIA.
Իմ հօր գոհարնե՛ր, խոնաւ աչքերով կորդելիան ձեզնից հրաժեշտ է խնդրում. գիտեմ՝ դուք ինչ էք, սակայն որպէս քոյր՝ խորշում եմ կոչել ձեր արատները իրենց անունով։ Սիրեցէք հօրս. ձեր խոստումնալից, սիրազեղ կրծքին յանձնում եմ նրան եւ սակայն, աւա՛ղ, թէ վայելէի դեռ նրա շնորհը, աւելի լաւ տեղ կը տայի նրան։ դեհ, մնաք բարով։

REGAN.
Դու մեր պարտքը մեզ մի՛ սովորեցնի։

GONERIL.
Թող ջանքդ լինի հաճելի լինել այդ քո ամուսնուդ, որ քեզ ընդունեց իբր ողորմութիւն։ Դու խնայեցիր հնազանդութիւնդ եւ արժանի ես, որ քեզ զլացուի՛ ինչ որ զլացար։

CORDELIA.
Լաւ ։ ժամանակը կը յայտնագործի, ինչ որ թաքցնում է խորամանկութիւնն իր ծալքերի տակ։ Նա, որ ծածկում է իր մոլութիւնքը, ամօթն ի վերջոյ ծաղր ու ծանակ է դարձնում նրան։ Յաջողութի՛ւն ձեզ։ Ֆրանսիայի թագաւորը եւ կորդելիա։

*[Cordelia and France exit.]*

GONERIL.
Քոյրիկ, շատ բան ունեմ քեզ ասելու մի նիւթի մասին, որ շատ մօտ կապ ունի մեզ երկուսիս հետ։ Կարծեմ մեր հայրն այս գիշեր գնալու է այստեղից։

REGAN.
Անշուշտ, եւ քեզ մօտ է գալու, իսկ միւս ամիս՝ մեզ մօտ։

GONERIL.
Տեսնո՞ւմ ես՝ որքան յեղյեղուկ է նրա ծերութիւնը։ Մեր տեսած օրինակը քիչ բան չէ. նա մեր քրոջը միշտ ամէնից աւելի էր սիրում, բայց թէ ինչ փուչ դատողութեամբ նրան վռնդեց, այդ շատ բիրտ կերպով ակներեւ է։

REGAN.
Այդ նրա զառամութեան տկարութիւնն է, բայց երբեք նա իր արածը լաւ չի հասկացել։

GONERIL.
Իր կեանքի ամենալաւ եւ առողջ օրերում նա շատ բարկացկոտ է եղել, ուրեմն մենք նրա ծերութիւնից պէտք է սպասենք ոչ միայն բնածին, խոր արմատացած թերութիւններ, այլեւ այն անզուսպ բորբոքումները, որ տկար եւ բարկասիրտ ծերութիւնը բերում է իր հետ։

REGAN.
Մենք նրանից պէտք է սպասենք այնպիսի փոփոխական զայրոյթներ, ինչպէս Քէնտի այս աքսորը։

GONERIL.
Դեռ մնաք բարովի արարողութիւններ են կատարուելու նրա եւ Ֆրանսիայի թագաւորի միջեւ։ Խնդրեմ համաձայնութիւն կայացնենք։ Եթէ մեր հայրը որեւէ իշխանութիւն ունենայ, իր արդի տրամադրութեամբ՝ նրա այս վերջին զիջողութիւնն, ի նպաստ մեզ, դատարկ հեգնութիւն կը լինի։

REGAN.
Կը մտածենք այդ մասին։

GONERIL.
Երկաթը տաք պիտի ծեծենք։

*[They exit.]*

][][

## ACT I. SCENE II.
A Hall in the Earl of Gloucester's Castle. Edmund enters with a letter.

EDMUND.
Դու՛ ես, ո՛վ բնութիւն, իմ աստուածուհին. ես հպատակն եմ քո օրէնքների. ինչո՞ւ ենթարկուեմ փուչ սովորութեան պատուհասներին եւ ինչո՞ւ թոյլ տամ ազգերի անմիտ բծախնդրութեան, որ նա զրկի ինձ իմ իրաւունքից լոկ այն պատճառով, որ իմ եղբօրից տասներկու կամ թէ տասնուչորս լուսին ետ եմ մնացել։ Ինչո՞ւ բիճ, է՞ր ստոր, երբ անդամներս նոյնչափ կայտառ են, հոգիս՝ նոյնչափ վեհ, կազմս՝ բարեձեւ, որչափ մի պարկեշտ տիկնոջ զաւակը։ Ինչո՞ւ են այդպէս մեզ միշտ խարանում՝ կրկնելով. անարգ եւ անարգութիւն, բի՜ճ, անա՛րգ, անա՛րգ, մե՛զ, որ բնութեան առոյգ, կենսալից այն գողութեան մէջ աւելի աւիւն, եռանդ ենք առնում, քան այն տաղտկալից, մաշուած մահճի մէջ, ուր ստեղծւում է թանձրամիտների մի ամբողջ սերունդ՝ ծնուած կէս-քնի, կէս-արթնութեան մէջ։ Այսպէս ուրեմն, էդգա՛ր հարազատ, ես պէտք է տիրեմ քո կալուածներին։ Մեր հօր գորովից ապօրէնն էդմոնդ նոյնչափ մաս ունի, որչափ որ ունի օրինականը։ Գեղեցի՜կ բառ է, օրինակա՜նը։ Լաւ, իմ հարազատ, թէ այս նամակը ազդեցիկ լինի, եւ հնարքս՝ յաջող, էդմոնդ ստորը կը գերազանցի օրինականին։ Աճում եմ, զարգանում։ Օ՛ն, դուք, աստուածնե՛ր, զօրաւիգ եղէք ապօրէններին։

*[Gloucester enters.]*

GLOUCESTER.
Քէնտը աքսորուի՛. ֆրանսիայի արքան բարկութեամբ մեկնի՛, եւ թագաւորը թողնի հեռանայ՝ իր իշխանութիւնն այլոց փոխանցա՜ծ, թոշակի մնացա՜ծ, եւ այս բոլորը մի ակնթարթո՞ւմ։ էդմոնդ, ի՞նչ կայ, ի՞նչ լուր։

*[Edmond hurriedly puts the letter away.]*

EDMOND.
Ոչինչ, տէր իմ։

GLOUCESTER.
Ինչո՞ւ ես այդպէս շտապով ծածկում այդ նամակը։

EDMUND.
Ես ոչ մի լուր չգիտեմ, տէր իմ։

GLOUCESTER.
Ի՞նչ թուղթ էր այդ, որ կարդում էիր։

EDMUND.
Ոչինչ, տէր իմ։

GLOUCESTER.
Ոչի՞նչ, ինչո՞ւ ուրեմն այդպէս սարսափած դրեցիր գրպանդ։ Ոչինչը կարիք չունի այդպէս շտապով ծածկուելու։ Տուր տեսնեմ, տու՛ր. եթէ ոչինչ լինի, ես կարօտութիւն չեմ ունենայ ակնոցների։

EDMUND.
Աղաչում եմ, տէր իմ, ներեցէք ինձ. մի նամակ է, որ եղբայրս է ինձ գրել, եւ ես դեռ ամբողջը չեմ կարդացել, բայց որքան որ կարդացի, ես յարմար չեմ գտնում, որ դուք տեսնէք։

GLOUCESTER.
Տուր ինձ այդ նամակը, պարո՛ն։

EDMUND.
Թէ տամ՝ վայ, թէ չտամ՝ վայ։ Բովանդակութիւնը, որչափ մասամբ հասկացայ, պարսաւելի բան է։

GLOUCESTER.
Տեսնեմ, տեսնեմ։

EDMUND.
Իբրեւ արդարացում իմ եղբօրս՝ յոյս ունեմ, որ նա այս գրել է իմ առաքինութիւնը փորձելու կամ շօշափելու համար միայն։

GLOUCESTER.
[Reads.] *«Այս ընդունուած կարգը, այս ակնածանքը դէպի ծերութիւնը դառնացնում է մեր կեանքի ամենալաւ օրերը, մեզ զրկում է մեր բախտից, մինչեւ որ ծերութիւնը մեզ այլեւս անընդունակ է դարձնում վայելք զգալու նրանով։ Ես սկսում եմ գտնել մի ստոր եւ տխմար ստրկութիւն մեր հնազանդութեան մէջ դէպի զառամեալ բռնակալութիւնը, որ իշխում է ոչ թէ իր ունեցած կարողութեամբ, այլ այն պատճառով, որ մենք հանդուրժում ենք նրան։ Եկ ինձ մօտ, որ այս մասին*

*մանրամասն խօսենք։ Եթէ մեր հայրը այնքան քնէր, մինչեւ որ ես նրան զարթեցնէի, դու կը ստանայիր յաւիտեան նրա հասոյթի կէսը եւ կը լինէիր քո եղբօր սիրելին Էդգար»։* Հը՞, դաւադրութիւ՜ն. *«Քնէր, մինչեւ որ ես նրան զարթեցնէի՞. դու կը ստանայիր յաւիտեան նրա հասոյթի կէսը»* ։ իմ Էդգար որդի՞ս ։ նրա ձեռքը այսպիսի բան գրի՛. նրա սիրտը եւ ուղեղը այսպիսի բան յղանա՜։ Եր՞բ ստացար այս. ո՞վ բերեց։

EDMUND.

Ինձ չեն բերել, տէր իմ, հնարքը հէնց դրա մէջն է. ես այդ գտայ իմ առանձնասենեակի պատուհանում։

GLOUCESTER.

Գիրը ճանաչո՞ւմ ես, որ եղբօրդ է։

EDMUND.

Եթէ բովանդակութիւնը լաւ լինէր, տէր իմ, ես կը կարողանայի երդուել, որ նրանն է, բայց քանի որ այսպէս է, ես կ՝ուզէի խորհել, որ նրանը չէ։

GLOUCESTER.

Նրանն է։

EDMUND.

Նրա ձեռքն է, տէր իմ, բայց յոյս ունեմ, որ նրա սիրտը գրուածի մէջ չէ։

GLOUCESTER.

Մինչեւ այժմ այդ մասին երբեք քեզ հետ խօսք չի՞ բացել։

EDMUND.

Երբեք, տէր իմ, բայց շատ անգամ նա պնդել է իմ մօտ, որ երբ որդիները չափահաս են, հայրերն սկսում են զառամել, հայրը պէտք է որդու խնամքի տակ լինի, իսկ որդին կառավարի նրա ստացուածքը։

GLOUCESTER.

O՛, սրիկա՛յ, սրիկա՛յ. հէնց իր այդ գաղափարն է այս նամակի մէջ. գարշելի սրիկայ, հրէշաւո՛ր, ատելի՛, գազանայի՜ն սրիկայ, վատթա՛ր, քան գազանային։ [To a Servant.] Գնա, այ տղայ, կանչիր նրան, ես պէտք է նրան ձերբակալեմ ... գարշելի՛ սրիկայ ... որտե՞ղ է նա։

EDMUND.

Լաւ չգիտեմ, տէր իմ։ Եթէ բարեհաճէք զսպել առժամանակ ձեր զայրոյթը իմ եղբօրս դէմ, մինչեւ կարողանաք աւելի լաւ ապացոյց դուրս քաշել նրանից իր մտքերի մասին, այդ կը լինի աւելի հաստատուն ընթացք, այնինչ եթէ բռնութիւն գործ դնէք նրա վրայ եւ սխալուած լինէք նրա դիտումների մասին, այդ ձեր պատուի մէջ մի մեծ ական կը լինէր, եւ դուք քարուքանդ կ՝անէիք նրա

հնազանդութեան նոյնիսկ սիրտը։ Ես համարձակւում եմ իմ կեանքս գրաւ դնել, որ նա այս գրել է նրա համար միայն, որ փորձի, թէ ի՜նչ աստիճան սէր ունեմ դէպի ձերդ յարգութիւնը, ոչ թէ որեւիցէ մի չար նպատակով։

GLOUCESTER.
Կարծո՞ւմ ես։

EDMUND.
Եթէ ձեր յարգութիւնը յարմար դատի, ես մի այնպիսի տեղ կը կանգնեցնեմ ձեզ, որ դուք ձեր ականջով լսէք մեր խօսակցութիւնն այդ մասին եւ բաւարարութիւն ստանաք, եւ այդ՝ ոչ աւելի ուշ, քան այս գիշեր։

GLOUCESTER.
Նա չի կարող այսպիսի մի հրէշ լինել։

EDMUND.
Անպատճառ չի կարող լինել։

GLOUCESTER.
Դէպի իր հա՞յրը, որ նրան այնքան անհուն եւ քնքուշ սիրով սիրում է ։ Երկի՜նք եւ երկի՛ր ։ Էդմոնդ, գտիր նրան, մուտք տուր ինձ նրա գաղտնիքի մէջ, գործը կարգադրիր ըստ քո խոհեմութեան, ես պէտք է մէկ կողմ դնեմ իմ հայրական գութը՝ հարկ եղած վճռականութիւնը ցոյց տալու համար։

EDMUND.
Ես իսկոյն կը գնամ, կը փնտրեմ նրան, տէր իմ, գործը կը կարգադրեմ, որչափ որ կարողանամ, եւ ձեզ տեղեկութիւն կը տամ։

GLOUCESTER.
Արեւի եւ լուսնի այս վերջին խաւարումները ոչ մի լաւ բան չեն գուշակում մեզ համար։ Թէեւ բնական օրէնքների գիտութիւնը կարող է այս կամ այն բացատրութիւնը տալ, այնուամենայնիւ բնութիւնն իրան մտրակուած է զգում դրանց յաճախակի արդիւնքներով, սէրը պաղում է, բարեկամութիւնը՝ թուլանում, եղբայրները միմեանց դէմ են ելնում, քաղաքներում՝ ապստամբութիւններ, գիւղերում՝ պառակտումներ, պալատներում՝ դաւաճանութիւն, հօր եւ որդու մէջ կապը խզւում է։ Այս իմ սրիկայ որդին գուշակուած ազդեցութեան տակ է. ահա որդին՝ հօր դէմ, թագաւորը շեղւում է բնական հակումից, ահա հայրը՝ որդու դէմ։ Մեր լաւ օրերն անցան. մեքենայութիւններ, խարդախութիւն, մատնութիւն եւ ամէն տեսակի կործանիչ խառնակութիւններ հալածում են մեզ անդադար մինչեւ մեր գերեզմանը։ Գտի՛ր այդ թշուառականին, Էդմո՛նդ, դու բան չես կորցնի, զգուշութեամբ գործիր։ Եւ այն ազնիւ եւ առաքինի Քէնտը՝ աքսորուա՛ծ. նրա յանցանքը՝ ազնուութիւն։ Զարմանալի՛ է։

*[Gloucester exits.]*

EDMUND.
Այսպէս է աշխարհի զարմանալի տխմարութիւնը, որ երբ մեր բախտը հիւանդ է այդ յաճախ՝ մեր սեփական ընթացքի զեղծումներից, մենք մեր դժբախտութիւնները սովոր ենք բարդել արեւի, լուսնի, աստղերի վրայ, որպէս թէ մենք ճակատագրի ուժով սրիկաներ ենք, տխմարներ ենք՝ երկնային հրամանով. թշուառականներ, գողեր, դաւաճաններ՝ երկրագնդերի ազդեցութեամբ. գինովներ, ստախօսներ, շնացողներ՝ մի հարկադրուած հնազանդութեամբ դէպի մոլորակների ազդեցութիւնը, եւ բոլոր մեղքերը, որ գործում ենք, աստուածային մղմամբ ենք գործում։ Սքանչելի պատրուակ՝ բոզարած մարդու. բարդել իր նոխազային հակումներն աստղերի վզին։ Իմ հայրը զուգաւորուեց մօրս հետ Վիշապի պոչի տակ, եւ իմ ծնունդը տեղի ունեցաւ Մեծ Արջի տակ. հետեւանքն այն է, որ ես կոպիտ եմ եւ լկտի։ Վահ, ես ինչ որ եմ, հէնց այն կը լինէի, եթէ նոյնիսկ երկնակամարի ամենակուսական աստղը շողշողած լինէր իմ ապօրինի յղութեան վրայ։

[Edgar enters.]

EDMUND [cont.]
Ճիշտ ի դէպ է գալիս, ինչպէս հին կատակերգութիւնների վախճանը։ Իմ դերս կը լինի մի թշուառ մելամաղձութիւն՝ մի հառաչանքի հետ, որպէս Բեդլամի Տոմը։ [Loudly.] Օ՜ այս խաւարումները գուշակում են այսպիսի պառակտումներ. Ֆա, սօլ, լա, մի։

EDGAR.
Ինչ՞ լուր, եղբայր Էդմոնդ։ Այդ ի՞նչ մտախոհութեան մէջ ես խորասուզուել։

EDMUND.
Եղբայր, ես մտածում եմ մի գուշակութեան վրայ, որ անցած օրը կարդացի, թէ ինչ պէտք է լինի այս խաւարումների հետեւանքը։

EDGAR.
Միթէ՞ զբաղւում ես այդ բանով։

EDMUND.
Հաւատացնում եմ՝ նրա գրած արդիւնքները, դժբախտաբար, իրականանում են. հրէշաւոր կռիւներ զաւակի եւ ծնողի մէջ. մահ, սով, հին բարեկամութիւնների խախտում, պառակտումներ պետութեան մէջ, սպառնալիքներ եւ անէծքներ թագաւորի եւ ազնուականների դէմ, անտեղի կասկածներ, բարեկամների արտաքսում, զօրքերի ցրւում, ամուսնալուծութիւններ, չգիտեմ էլ ինչ։

EDGAR.
Որքա՞ն ժամանակ է, որ աստղագիտութեան աշակերտ ես դարձել։

EDMUND.
Լաւ է, լաւ. ե՞րբ ես տեսել վերջին անգամ իմ հօրը։

EDGAR.
Եր՞բ. անցած գիշեր։

EDMUND.
Իր հետ խօսեցի՞ր։

EDGAR.
Այո՛, ամբողջ երկու ժամ։

EDMUND.
Սիրո՞վ բաժանուեցիք միմեանցից, ոչ մի դժգոհութիւն չնկատեցի՞ր նրա մէջ, խօսքից կամ դէմքից։

EDGAR.
Ամենեւի՛ն։

EDMUND.
Լաւ մտածիր, թէ ի՞նչ բանով պէտք է նրան վիրաւորած լինես, եւ, աղաչում եմ, խոյս տուր առժամանակ նրա ներկայութիւնից, մինչեւ որ նրա դժգոհութեան բորբոքն անցնի։ Այս րոպէիս նա այնպէս զայրացած է, որ մահդ անգամ չի կարող ամոքել նրան։

EDGAR.
Մի սրիկայ պէտք է ինձ զրպարտած լինի։

EDMUND.
Ես էլ այդ բանից եմ վախենում։ Խնդրեմ, դու քեզ համբերութեամբ հեռու պահիր, մինչեւ որ զայրոյթի սաստկութիւնն ամոքուի, եւ, ինչպէս ասացի, եկ ինձ հետ, առանձնացիր իմ բնակարանի մէջ. ես քեզ մի տեղ կը տանեմ, որ դու լսես մեր հօր խօսելը։ Եկ, խնդրեմ, ահա իմ բանալին.- երբ ուզես դուրս գալ, զինուած դուրս եկ։

EDGAR.
Զինուա՞ծ, եղբայր։

EDMUND.
Եղբայր, ես քեզ բարի խորհուրդ եմ տալիս, զինուած շրջիր։ Ես ազնիւ մարդ չեմ, եթէ քո մասին չար դիտաւորութիւններ չկան։ Ես քեզ պատմեցի, ինչ որ լսել եւ տեսել եմ, բայց շատ մեղմ կերպով, շատ

հեռու՝ իրականութեան սոսկալի պատկերից։ Աղաչում եմ, գնա։

EDGAR.
Շուտով լուր կը տա՞ս ինձ։

EDMUND.
Ես այս գործի մէջ քեզ եմ ծառայում։

*[Edgar exits.]*

EDMUND [cont.]
Մի բարեմիտ հայր, մի ազնիւ եղբայր, որի բնութիւնն այնքան հեռու է չարիք գործելուց, որ չի էլ կասկածում, որչա՛փ դիւրին են իմ հնարքները այսպիսի տխմար ազնուութեան հետ. գիտեմ՝ ինչ կ՝անեմ. եթէ ծնունդով կալուած չստացայ, հնարքով կը ստանամ. ամէն մի միջոց լաւ է ինձ համար, որ կը հասցնի ինձ իմ նպատակին։

*[Exits.]*

][][

ACT I. SCENE III.
A Room in the Duke of Albany's Palace. Goneril and Oswald enter.

GONERIL.
Ճի՞շտ է, որ հայրս զարկել է թիկնապահիս այն պատճառով, որ նա անպատուել է նրա խեղկատակին։

OSWALD.
Այո՛, տիկին։

GONERIL.
Գիշեր եւ ցերեկ ինձ անարգում է եւ ամէն մի ժամ նա բարկանում է՝ գործելով մի բիրտ, անվայել յանցանք, որ մեզ բոլորիս վրդովեցնում է։ Ո՛չ, ես չեմ կարող այլեւս հանդուրժել։ Իր ասպետները սաստիկ խռովայոյզ մարդիկ են դառնում, ինքն էլ շարունակ ամէն մի չնչին պատճառի համար պարսաւում է մեզ։ երբ որսից տուն գայ, իր հետ չեմ խօսի։ Իսկ դուք ասացէք, որ ես հիւանդ եմ եւ շատ լաւ կ՝անէք, որ չծառայէք առաջուայ նման իսկ պատասխանը ես ինքս կը տամ։

*[Horns call from without.]*

OSWALD.
Նա եկաւ, տիկին, ձայնը լսում եմ։

GONERIL.
Որչափ կարող էք, անհոգ ձեւացէք թէ՛ դու՛, եւ թէ՛ քո բոլոր ընկերները. շատ լաւ կը լինի, որ նա բարկանայ. եթէ հաւան չէ, քրոջս մօտ թող գնայ։ Նա այս գործի մէջ ինձ համամիտ է եւ նա թոյլ չի տայ՝ իշխեն իր վրայ։ Զառամեալ ծերուկ, որ կամենում է դեռեւս վարել մի իշխանութիւն, որ ինքն իր ձեռքով այլոց է յանձնել։ Ա՛հ, կեանքս վկայ, ծեր յիմարները դառնում են կրկին դէպի մանկութիւն։ Պէտք է նրանց հետ խստութեամբ վարուել, երբ փափկութիւնը օգուտ չի տալիս։ Յիշիր ասածս։

OSWALD.
Շատ լաւ, տիրուհի։

GONERIL.
Ասպետներին էլ պաղ դէմք ցոյց տուէք. ինչ որ կը լինի, թող լինի, հոգ չէ. ընկերներիդ էլ նոյնը պատուիրիր։ Ես կամենում եմ մի առիթ փնտրել եւ պէտք է գտնեմ, որ լեզուս բանամ։ Քրոջս իսկոյն նամակ կը գրեմ, որ նա էլ վարուի ճիշտ, ինչպէս որ ես. ճաշ պատրաստեցէք։

*[Both exit.]*

][][

ACT I. SCENE IV.
A Hall in Albany's Palace. Kent enters, disguised.

KENT.
Թէ կարողանամ ձայնս էլ փոխել եւ օտար մարդու շեշտը ձեւացնել, գուցէ իմ բարի մտադրութիւնը կարենայ հասնել այն յաջողութեան, որի պատճառով դէմքս ծպտել եմ։ Արդ, աքսորուած Քէնտ, եթէ կարող ես ծառայել նրան, որ քեզ պատժել է ... Օ՛ երանի՛ թէ այդ քեզ յաջողուէր ... հայնժամ քո տէրը, որին սիրում ես, կարող է տեսնել գործ դրուած ջանքդ։

*[Lear enters with Knights and Servants.]*

LEAR.
Մի րոպէ չուշացնէք ճաշս. գնացէք եւ շուտ պատրաստեցէք։

*[A Servant exits.]*

LEAR [cont.]
Ինՙչ է, ոՙվ ես դու։

KENT.
Մի մարդ, տէր իմ։

LEAR.
Արհեստդ ի՞նչ է, ի՞նչ ես ուզում մեզնից։

KENT.
Արհեստս այս է չլինել պակաս, քան ինչ որ երեւում եմ, ծառայել հաւատարմութեամբ նրան, ով որ ինձ վստահանայ, սիրել նրան, ով որ ազնիւ է։ Ընկերութիւն անել նրա հետ, ով որ շատ գիտէ, քիչ կը խօսի. վախենալ դատաստանից, մաքառել, երբ ուրիշ ճար չկայ, եւ ձուկ չուտել։

LEAR.
Ոՙվ ես դու։

KENT.
Մի շատ ազնուասիրտ մարդ եւ այնչափ աղքատ, որչափ թագաւորը։

LEAR.
Եթէ դու նոյնչափ աղքատ ես, ինչպէս հպատակ, որչափ նա՝ ինչպէս թագաւոր, իրա՛ւ որ շատ աղքատ ես։ Ինՙչ ես ուզում։

KENT.
Ծառայութիւն։

LEAR.
Ոՙւմ կ՝ուզէիր ծառայել։

KENT.
Քեզ։

LEAR.
Միթէՙ ճանաչում ես ինձ, ա՛յ մարդ։

KENT.
Ո՛չ, պարոն, բայց քո դէմքի մէջ դու մի բան ունես, որ սիրտս ուզում է քեզ իրեն տէր անուանել։

LEAR.
Ին՞չ է այդ։

KENT.
Իշխանութիւն։

LEAR.
Ին՞չ ծառայութիւններ կարող ես անել։

KENT.
Ես կարող եմ լաւ գաղտնիք պահել, ձի հեծնել, վազել, աղաւաղել մի հետաքրքիր պատմութիւն, կատարել մի պարզ պատուէր համարձակ կերպով։ Ամէն ինչ, որ հասարակ մարդիկ կարող են անել, ես էլ կարող եմ, եւ ամենալաւ բանն իմ մէջ փութաջանութիւնս է։

LEAR.
Քանի՞ տարեկան ես։

KENT.
Ոչ այնչափ երիտասարդ, պարոն, որ մի կնոջ երգելու համար սիրահարուեմ նրան, ոչ էլ այնչափ ծեր, որ խենթանամ նրա վրայ որեւիցէ բանի համար։ Մէջքիս վրայ ունեմ քառասունութ տարի։

LEAR.
Հետեւիր ինձ, դու ինձ պէտք է ծառայես։ Եթէ ճաշից յետոյ այսքան լաւ երեւաս ինձ, ես քեզանից չեմ բաժանուի։ Ճաշ, է՛յ ճաշ։ Ո՞ւր է իմ անպիտանը, իմ խեղկատակը։ Գնա, իմ խեղկատակիս կանչիր այստեղ։

*[Oswald enter.]*

LEAR [cont.]
Հէյ, hէ՛յ, ա՛յ մարդ, աղջիկս որտե՞ղ է։

OSWALD.
Ներեցէք ինձ—

*[Exits.]*

LEAR.
Ին՞չ է ասում այդ մարդը։ ետ կանչեցէք այդ յիմարագլխին։

*[A Knight exits.]*

LEAR [cont.]
Ո՞ւր է իմ ծաղրածուս, հո՜յ։ Կարծես ամբողջ աշխարհը քուն է մտել։

*[The Knight returns.]*

LEAR [cont.]
Ի՞նչ է, ո՞ւր է այդ շունը։

KNIGHT.
Տէր իմ, նա ասում է, որ ձեր դուստրը առողջ չէ։

LEAR.
Ինչո՞ւ այդ թշուառականը ետ չդարձաւ, երբ որ ես նրան կանչեցի։

KNIGHT.
Տէր իմ, նա ինձ ուղղակի պատասխանեց, որ չի ուզում գալ։

LEAR.
Չի ուզո՞ւմ։

KNIGHT.
Տէր իմ, չգիտեմ՝ ինչ կայ . բայց ինձ այնպէս է երեւում, որ ձերդ մեծութիւնը այժմ չի հիւրասիրուած այն սիրալիր կարգ ու կանոնով, ինչ որ առաջ։ Թէ՛ ընդհանուր ծառայողները, թէ՛ դուքսը եւ թէ՛ ձեր դուստրը շատ են պակասեցրել իրենց քաղաքավարութիւնը։

LEAR.
Հա՜, կարծո՞ւմ ես։

KNIGHT.
Տէր իմ, աղերսում եմ ձեզ, որ ներէք ինձ, եթէ սխալւում եմ։ Սակայն իմ անձնուիրութիւնը չի կարող լուռ մնալ, երբ որ խորհում եմ, որ ձերդ մեծութիւնը արհամարհուած է։

LEAR.
Դու ինձ յիշեցնում ես մի բան, որ ես ինքս էլ դիտել եմ։ Այս վերջերս նկատել եմ մի տեսակ անուշադրութիւն, բայց աւելի վերագրել եմ այդ իմ սեփական նախանձայոյզ դժուարահաւանութեան, քան թէ մի որոշ դիտաւորութեան եւ չար մտքի։ Պէտք է աւելի ուշադրութեամբ զննեմ։ Բայց ո՞ւր է իմ խեղկատակը, երկու օր է, որ նրան չեմ տեսել։

KNIGHT.
Տէր իմ, այն օրուանից, որ մեր կրտսեր տիրուհին գնաց Ֆրանսիա, խեղկատակը շատ հալումաշ է լինում։

LEAR.
Մի՛ խօսիր այդ մասին։ Ես ինքս էլ եմ նկատել։- Գնա եւ ասա աղջկանս, որ ուզում եմ խօսել նրա հետ։

*[A Servant exits.]*

LEAR [cont.]
Դու էլ գնա եւ իմ խեղկատակիս ասա, որ գայ այստեղ։

*[As a second Servant exits Oswald re-enters.]*

LEAR [cont.]
Հա՛, դու՛, պարո՛ն, դու՛, պարոն։ Եկ այստեղ տեսնեմ։ Ես ո՞վ եմ, ա՛յ մարդ։

OSWALD.
Իմ տիրուհուս հայրը։

LEAR.
Իմ տիրուհուս հա՞յրը։ Հա՞, տիրոջ ստրուկ, շան ծնունդ, դու քծնող սրիկայ։

*[Lear starts hitting Oswald.]*

OSWALD.
Ես ձեր ասածներից ոչ մէկը չեմ, տէր իմ, խնդրեմ ինձ ներէք։

LEAR.
Համարձակւո՞ւմ ես ակնարկներ փոխանակել ինձ հետ, անզգա՛մ։

*[Lear begins hitting Oswald.]*

OSWALD.
Ես չե՛մ թոյլ տայ, որ ինձ զարկէք, պարո՛ն։

*[Kent trips Oswald.]*

KENT.
Ոչ էլ գետին գլորել, դու՛, կեղտոտ գնդակ խաղացող։

LEAR.
Շնորհակալ եմ քեզնից, ա՛յ մարդ։ Դու ինձ ծառայեցիր, եւ ես քեզ պէտք է սիրեմ։

KENT.
Հայդէ՛, պարոն, վե՛ր կաց, կորի՛ր, ես քեզ կը սովորեցնեմ մարդու պատիւը հասկանալ։ Դու՛րս, դու՛րս։ Եթէ ուզում ես մէկ անգամ էլ հաստափոր հասակդ չափեմ, մնա։ Եթէ ոչ՝ դու՛րս կորիր, դու՛րս։ Գլխիդ մէջ խելք կա՞յ, թէ՞ ոչ, շուտ։

*[Kent pushes and shoves Oswald off-stage.]*

LEAR.
Լաւ՛, իմ բարի ծառաս, շնորհակալ եմ քեզնից, ահա ծառայութեանդ մի կանխավճար։

*[As Lear gives Kent money the Joker enters.]*

JOKER.
Թող ես էլ վարձատրեմ դրան։ Ահա քեզ իմ խենթի գլխարկը։

*[The Joker hands Kent his cap.]*

LEAR.
Որտե՞ղ ես, իմ սիրուն չարաճճի, ինչպէ՞ս ես։

JOKER.
Ա՛յ մարդ, լաւ կ՝անես՝ իմ գլխարկը դնես։

KENT.
Ինչո՞ւ, խենթուկ։

JOKER.
Նրա համար, որ պաշտպան ես դուրս եկել մի շնորհազուրկ մարդու։ Եթէ դու չես կարող ժպտալ դէպի այն կողմ, որտեղից քամին փչում է, դու շուտով հարբուխ կը ստանաս։ Ահա՛, առ իմ գլխանոցը։ Վա՛հ, այս մարդն իր աղջիկներից երկուսին արտաքսել է եւ երրորդին ակամայ իր օրհնութիւնն է տուել։ Եթէ դու ուզում ես հետեւել սրան, անպատճառ պէտք է իմ իմ փչնամոլները դնես գլխիդ։ Ինչպէ՞ս ես, քեռի։ Երանի թէ երկու այլասերված ունենայի եւ երկու դուստր։

LEAR.
Ինչո՞ւ, այ տղայ։

JOKER.
Որովհետեւ, եթէ ես նրանց տայի իմ բոլոր ստացուածքը, գոնէ երկու այլասերված ինձ համար կը պահէի։ Ահա քեզ իմս, միւսն էլ աղջիկներիցդ մուրա։

LEAR.
Զգո՜յշ, ա՛յ տղայ, մտրակը։

JOKER.
Ճշմարտութիւնը մի շուն է, որ պէտք է շնանոցում մնայ. նրան մտրակելով սենեակից դուրս կ՝անեն, այնինչ Տիկին Շուն կարող է շնթռկել կրակի կողքին եւ վատ հոտ հանել։

LEAR.
Ի՜նչ դառն լեղի՝ ինձ համար։

JOKER.
Եկ, քեզ մի ճառ սովորեցնեմ։

LEAR.
Սովորեցրու։

JOKER.
Լաւ ականջ դիր, քեռի։
*«Aie plus que tu ne montres;*
*Parle moins que tu ne sais;*
*Prête moins que tu n'as;*
*Va plus à cheval qu'à pied;*
*Apprends plus de choses que tu n'en crois;*
*Parie pour un point plus bas que celui qui te vient;*
*Quitte ton verre et ta maîtresse,*
*Et tiens-toi coi dans ta maison;*
*Et tu auras alors*
*Plus de deux dizaines à la vingtaine:»*

KENT.
Այդ ոչինչ է, խեղկատակ։

JOKER.
Ուրեմն նման է անվարձ փաստաբանի խօսքին դու ինձ ոչինչ չես տուել դրա համար։ Ոչնչից կարո՞ղ ես մի բան շինել, քեռի։

LEAR.
Անշուշտ ոչ, տղայ, ոչնչից միայն ոչինչ կարող է շինուել։

JOKER.
[To Kent.] Խնդրեմ, ասա սրան, թէ իր կալուածների հասոյթն էլ հէնց այդքան է։ Նա խեղկատակի խօսքին չի ուզում հաւատալ։

LEAR.
Դու դառն խեղկատակ ես։

JOKER.
Իսկ դու, բարեկամ, գիտե՞ս տարբերութիւնը դառն եւ ինչ-որ քաղցր խեղկատակների միջեւ՞։

LEAR.
Ոչ, սիրելիս, սովորեցրու։

JOKER.
[Sings.]
*«Ce lord qui t'a conseillé*
*De te dépouiller de tes domaines,*
*Viens, place-le ici près de moi;*
*Ou bien toi, prends sa place.*
*Le fou débonnaire et le fou mordant*
*Seront aussitôt en présence:*
*L'un ici en habit bigarré,*
*Et on trouvera l'autre là:»*

LEAR.
Ինձ է՞լ ծաղրածու ես կանչում, ա՛յ տղայ։

JOKER.
Ին՞չ անեմ, բոլոր ուրիշ տիտղոսներդ բաժանեցիր ուրիշներին, իսկ այդ մէկը քո բնածինն է։

KENT.
Տէր իմ, բոլորովին խենթութիւն չէ այս։

JOKER.

Ո՛չ, ես իմ հոգիս. լորդերը եւ մեծամեծները չեն ուզում խենթութիւնը ինձ թողնել։ Եթէ ես դրա մենաշնորհին ունենայի, նրանք էլ մի մաս կը պահանջէին, դեռ տիկիններ էլ կան, որոնք չեն թոյլ տայ, որ խենթութեան ամբողջ մենաշնորհը ինձ վերապահեմ. նրանք էլ մի բան պէտք է խլեն։- Մի ձու տուր ինձ, քեռի, եւ ես քեզ կը տամ երկու թագ։

LEAR.

Ինչ՞ երկու թագեր են դրանք։

JOKER.

Ինչ՞. երբ որ ձուն միջից երկու անեմ եւ միջուկն ուտեմ, կը մնան ձուի կեղեւի երկու թագերը։ Երբ որ դու թագդ միջից երկու արեցիր եւ երկու մասերն էլ բաշխեցիր, դու քո էշդ շալակեցիր ցեխի մէջ։ Շատ քիչ խելք մնաց ճաղատ թագիդ մէջ, երբ քո ոսկի թագդ ուրիշներին տուիր։ Եթէ ես ինձ նման եմ խօսում, թող ով որ ճիշտ համարի, նա մտրակուի։

[Sings.]

*«Jamais les fous n'ont eu moins de vogue que cette année;*
*Car les sages sont devenus des écervelés;*
*Ils ne savent que faire de leur bon sens,*
*Tant leur conduite est baroque:»*

LEAR.

Երբուանի՞ց է, որ այսպէս առատ ես երգերով, ա՛յ տղայ։

JOKER.

Այն օրուանից, քեռի, որ դու աղջիկներիդ քեզ մայր շինեցիր։ Որովհետեւ այն օրուանից, որ դու գաւազանդ տուիր նրանց ձեռքը եւ քո վարտիքդ ցած քաշեցիր։

[Singing.]

*«Alors, saisies de joie, elles ont pleuré;*
*Et moi, j'ai chanté dans mon chagrin*
*De ce qu'un roi tel que toi jouait à cligne-musette,*
*Et s'allait mettre avec les fous:»*

Խնդրում եմ, քեռի, մի ուսուցիչ պահիր, որ քո խեղկատակին սուտ խօսել սովորեցնի։ Ես շատ փափագ ունեմ ստախօսութիւն սովորելու։

LEAR.

Եթէ սուտ խօսէս, ա՛յ տղայ, մտրակ կուտես։

JOKER.
Ես զարմանում եմ, որ դու եւ աղջիկներդ ազգական էք։ Նրանք ուզում են ինձ ծեծել, որովհետեւ ճշմարիտ եմ խօսում, իսկ դու ուզում ես ինձ ծեծել, երբ որ սուտ եմ խօսում։ Երբեմն էլ ինձ ծեծում են լուռ մնալուս համար։ Ինչ որ լինէի, հոգ չէ, բայց խեղկատակ չլինէի։ Այսուհանդերձ, ես չէի ուզի քո տեղ լինել, քեռի։ Դու քո խելքդ միջից կտրեցիր եւ մէջտեղը ոչինչ չթողիր։ Ահա կտրուածներից մէկը գալիս է։

*[Goneril enters.]*

LEAR.
Ինչպէ՞ս ես, աղջիկս, ինչո՞ւ ես կապել այդ ճակատանոցը։ Ինձ այնպէս է թւում, որ այս վերջերս շատ թխպած ես։

JOKER.
Քո բանդ այն ժամանակ լաւ էր, երբ կարիք չունէիր հոգս անելու նրա դէմքի թխպելու մասին։ Այժմ դու մի զրօ ես առանց թուանշանի։ Ես քեզնից լաւ եմ. ես գոնէ մի խեղկատակ եմ, իսկ դու՝ ոչինչ։ [To Goneril.] Այո՛, արեւս վկայ, պէտք է լեզուս զսպեմ։ Դէմքդ այդպէս է հրամայում ինձ, թէեւ ոչինչ չես ասում։ Հը՛մ, հը՛մ։
*Celui qui ne garde ni mie ni croûte,*
*Las de tout se trouvera pourtant manquer de quelque chose.*
[Pointing to Lear.] Ահա մի փուչ սիսեռի փոճոկ։

GONERIL.
Ոչ միայն, տէր իմ, ձեր այս լիրբ խենթը, այլ ամբարտաւան ձեր շքախմբից իւրաքանչիւր ոք ամէն մի րոպէ տրտունջ է անում եւ կռիւ է սարքում եւ անտանելի, բիրտ խռովութիւններ։ Տէր, կարծում էի, որ երբ ձեզ յայտնեմ, դուք այդ բաներին իսկոյն ճար կ՝անէք։ Բայց այն բոլորից, ինչ որ վերջերս ինքներդ խօսել եւ կամ արել էք, շատ վախենում եմ, որ դուք ինքներդ էք ձեր թոյլտուութեամբ նրանց պաշտպանում եւ քաջալերում։ Եթէ այդ ճիշտ է, ձեր այդ յանցանքը զերծ չէ պարսաւից, եւ ոչ էլ ճարը շատ կը յապաղի։ Որոնց դիտումն է առողջ պետութեան խաղաղութիւնը գուցէ ձեր աչքին նախատինք թուան եւ ա՛յլ դէպքի մէջ ամօթ կը լնէին, բայց այժմ հարկը դրանց կ՝անուանի նախազգուշութիւն։

JOKER.
Տեսնո՞ւմ ես, քեռի՛, ծիտն այնչափ երկար պահեց կկուին, որ նրա ձագերը գլուխը կծեցին։ Այսպէս ճրագը յանգաւ, եւ մենք մնացինք մութի մէջ։

LEAR.
Մեր աղջի՞կն ես դու։

GONERIL.

Բաւական է, տէ՛ր, ես ցանկանում եմ, որ դուք գործ դնէք ձեր այն լրջամիտ իմաստութիւնը, որով, գիտեմ ես, դուք օժտուած էք. եւ ձեռք վերցնէք այդ վարմունքներից, որոնք վերջերս ձեզ փոփոխել են ձեր ճիշտ եղածից։

JOKER.

Աւանակն էլ կարող է իմանալ, թէ երբեմն լինում է, որ կառքն է ձիուն քաշում։ Ճի՛ւ, ճը՛կ։ Քեզ սիրում եմ։

LEAR.

Կա՞յ այստեղ մի ոք, որ ինձ ճանաչի։ Ո՛չ, սա Լիրը չէ։ Ո՛չ. միթէ՞ Լիրը այսպէս է քայլում, այսպէս է խօսում։ Ո՞ւր են աչքերը։ Կամ նրա խելքը տկարանում է, եւ կամ թմրել է դատողութիւնը հա, արթո՞ւն է նա։ Ո՛չ, անհնար է։ Ո՞վ կարող է ինձ ասել, թէ ով եմ։

JOKER.

Լիրի ստուերը։

LEAR.

Ուզում եմ իմանալ, որովհետեւ իմ վեհապետութեան նշանները, իմացականութիւնը եւ դատողութիւնը կարող էին պատրել ինձ եւ կարծել տալ, որ աղջիկներ ունեմ։

JOKER.

Որոնք կամենում են ձեզ դարձնել մի հնազանդ հայր։

LEAR.

Ձեր անունն ի՞նչ է, գեղեցի՛կ տիկին։

GONERIL.

Ձեր այս զարմացքն էլ, տէր իմ, նման է ձեր միւս նորահնար անհեթեթութեանց։ Աղաչում եմ ձեզ, որ լաւ հասկանաք իմ ասածներս։ Դուք, ծեր լինելով եւ պատկառելի, նաեւ խելացի պէտք է լինէիք։ Այստեղ դուք ունէք հարիւր թիկնապահ, որոնք բոլորը այնչափ խռովայոյզ, լիրբ եւ յանդուգն են, որ դարձրել են մեր արքունիքը իրենց բարքերի ապականութեամբ մի անկարգ պանդոկ։ Որկրամոլութիւն եւ լկտութիւնը դարձնում են նրան աւելի նման մի պիղծ գինետան եւ բոզանոցի, քան թէ յարգելի մի արքունիքի։ Մոլութիւնն անգամ մի անմիջական դարման է խնդրում։ Լսեցէք ուրեմն իմ աղաչանքս։ Քանզի նա, որ այժմ ձեզնից խնդրում է, եթէ չընդունէք, բռնութեամբ կ՝առնի։ Մի քիչ պակսեցրէք ձեր շքախումբը, եւ մնացածները, որոնց կը պահէք, այնպիսի մարդիկ պիտ լինեն նրանք, որ պատիւ բերեն ձեր ծերութեանը եւ կարողանան ճանաչել թէ՛ ձեր, թէ՛ իրենց յարգը։

LEAR.

Դժո՛խք եւ դեւե՛ր։ Թամբեցէք ձիերս, կանչեցէք խումբս։ Այլասերուա՛ծ բիճ։ Ես քեզ այլեւս նեղութիւն

չեմ տայ։ Ինձ դեռ մնում է մի ուրիշ դուստր էլ։

GONERIL.
Դուք ծեծ էք տալիս իմ ծառաներիս, եւ ձեր սինլքոր, անկարգ խուժանը ծառայեցնում է այնպիսի մարդկանց. որոնք իրենցից աւելի բարձր են։

*[Albany enters.]*

LEAR.
Վա՜յ գայ այն մարդուն, որ ուշ է զղջում։ [To Albany.] Այդ դո՞ւք էք, պարոն։ Այ՞դ է ձեր կամքը. խօսեցէ՛ք, պարոն։ Ձիերս պատրա՞ստ են։ Ապերախտութիւ՛ն, ժայռասի՛րտ դու դեւ, աւելի ահռելի, քան ծովի հրէշը, երբ որ մտնում ես մի զաւակի մէջ։

ALBANY.
Խնդրում եմ, պարոն, համբերող եղէք։

LEAR.
Ո՛վ զազրելի ցին, դու սուտ ես խօսում։ Իմ ծառաներս ընտիր մարդիկ են՝ ամէնից ազնիւ յատկութիւններով, որոնք քաջ գիտեն պարտք ու պատշաճի բոլոր հարկերը, որոնք պահում են ամենազգոյշ ինքնայարգութեամբ իրենց անունի անբիծ պատիւը։ Օ՛ չնչի՜ն յանցանք։ Ինչպէ՞ս այդչափ գարշ երեւացիր դու Կորդելիայի մէջ, որ գելոցի պէս՝ իմ բնութեան կազմը դու գալարեցիր, տեղից խախտեցիր, որ դուրս քաշեցիր իմ սրտիս միջից իր բոլոր սէրը եւ մաղձ լցրեցիր։ [Begins hitting himself around his head.] Ո՛հ, Լի՛ր, Լի՛ր, Լի՛ր, զարկ դու այս դռան։ Որ ներս ընդունեց քո խենթութիւնդ, եւ դուրս վռնդեց թանկագին խելքդ։ Գնա՜նք, գնա՜նք, ընկերներ։

ALBANY.
Տէր, ես անմեղ եմ։ Չգիտեմ՝ ինչն է ձեզ այդպէս յուզել։

LEAR.
Կարելի է, տէր։ Լսի՛ր, բնութիւն, լսի՛ր, սիրելի դիցուհի, լսիր աղերսիս. թէ միտք ունէիր այս արարածին բեղմնաւոր դարձնել, փոխիր քո կամքդ եւ ամլութիւն բեր նրա արգանդին։ Չորացրու՛ նրա ծննդարանը։ Եւ թող չծնուի նրա գարշ մարմնից ոչ մի երեխայ, որ նրան պատուի։ Թէ պէտք է յղանայ, նրա ծնունդը մաղձից ստեղծիր, որպէսզի ապրի եւ պիղծ, հրէշային մի տանջանք դառնայ եւ նրան տանջի։ Կնճիռներ դրոշմի իր մօր մատղահաս ճակատի վրայ։ Հոսուն արցունքով ջրանցքներ բանայ թշերի վրայ. նրա մայրական բոլոր երախտիքն ու երկունքները ծաղր ու ծանակի առարկայ շինի, որպէսզի զգայ, թէ որչափ սուր է օձի ժանիքից՝ մի երախտամոռ զաւակ ունենալ։ Գնա՜նք, հեռանա՜նք։

*[Lear exits.]*

ALBANY.
Ո՛վ դուք աստուածներ, որոնց պաշտում ենք, ին՞չ է պատճառը այս բոլոր բանի։

GONERIL.
Մի՛ տանջիր դու քեզ պատճառի համար։ Թո՛ղ նրա մաղձին այն ասպարէզը, որ զառանցանքը տալիս է նրան։

*[Lear re-enters.]*

LEAR.
Ի՜նչ, յիսուն հոգի իմ ասպետներից՝ միակ հարուածով, տասնուհինգ օրո՛ւմ։

ALBANY.
Տէր, ի՞նչ է պատահել։

LEAR.
Կ՝ասեմ քեզ։ [To Goneril.] Մա՛հ եւ կեա՜նք։ Ես ամաչում եմ, որ դու կարող ես ցնցել այս կերպով իմ այրութիւնս. այս տաք արցունքներս, որ դուրս են ցայտում կամքիս հակառակ, քե՛զ լինեն բաժին։ Խորշակ, մառախուղ հարուածե՜ն թող քեզ։ Թող հօր անէծքի անբոյժ խոցերը պատառեն ամէն զգայարանքդ։ Ո՛հ, հէ՛գ ծեր աչքեր, թէ այս պատճառով արտասուէք կրկին, ես ձեզ կը փորեմ եւ վայր կը ձգեմ այն ջրերի հետ, որ դուք թափում էք, որ տիղմը թրջէք։ Հա՛, միթէ՞ բանը այդտեղ է հասել։ Թող այդպէս լինի։ Բայց ես դեռ ունեմ ուրիշ դուստր էլ, որ, վստահ եմ ես, բարի է եւ գթած. երբ որ նա լսի քո այս արարքը, իր եղունգներով նա կը յօշոտի գայլային դէմքդ, եւ դու կը տեսնես, որ ես կը ստանամ կրկին այն դիրքը. որ, քո կարծիքով, ժխտել եմ ընդմիշտ։ Կը տեսնես, վստա՛հ կաց։

*[Lear, Kent and Attendants all exit.]*

GONERIL.
Տեսա՞ք այդ, տէր իմ։

ALBANY.
Որչափ էլ ես ձեզ ջերմ սրտով սիրեմ, գոների՛լ, չեմ կարող աչառու լինել։

GONERIL.
Խնդրեմ, հանգիստ կաց։ Հէ՛յ, Օսուալդ, ո՞ւր ես։ [To the Joker.] Դու էլ, ա՛յ պարոն, ոչ խենթ, այլ խարդախ, հետեւիր քո տիրոջ։

JOKER.
Քեռի Լի՛ր, քեռի Լի՛ր, մի քիչ սպասիր եւ խենթին էլ հետդ տար։ [Sings.]

*«Un renard qu'on a pris*
*Et une fille de cette espèce*
*Seraient bientôt dépêchés,*
*Si de ma cape je pouvais acheter une corde:*
*C'est ainsi que le fou vous quitte le dernier.»*

*[Exits.]*

GONERIL.
Այս մարդն ինձ տուեց մի լաւ գաղափար։ Ին՞չ, հարիւր ասպե՞տ։ Խոհեմութիւ՞ն է. եւ վտանգ չկա՞յ՝ թոյլ տալ, որ պահի հարիւր թիկնապահ, սպառազինուած։ Այո՛, որպէսզի ամէն երազի, ամէն մի ցնորքի, քմահաճոյքի, չնչին տրտունջի, գանգատի համար խելքին փչածը նրանց ուժերով գործադրութեան տայ. եւ մեր կեանքն անգամ նրա հաճոյքից կախում ունենայ։ Օսուա՛լդ, ինձ նայիր։

ALBANY.
Եւ սակայն իզուր չափազանցում ես գուցէ երկիւղդ։

GONERIL.
Լաւագոյն է այդ, քան վստահութիւն, թող առաջն առնեմ այն վտանգների, որոնցից վախ կայ, ոչ թէ վախենամ, որ վտանգները իմ առաջն առնեն։ Ես նրա սիրտը լաւ եմ ճանաչում. ինչ որ բարբառեց, գրեցի քրոջս. թէ քոյրս ուզի ընդունել նրան եւ նրա հարիւր թիկնապահներին, երբ ցոյց եմ տուել բոլոր վնասները։

*[Oswald enters.]*

GONERIL [cont.]
Ին՞չ եղաւ, Օսուալդ։ Արդեօք գրեցի՞ր քրոջս նամակը։

OSWALD.
Այո՛, տիրուհի։

GONERIL.
Առ քեզ հետ մարդիկ եւ շու՛տ ձի նստիր, պատմիր մանրամասն իմ երկիւղները եւ քո կողմից էլ ապացոյցներ տուր, որոնք աւելի համոզիչ լինեն։ Շուտ գնա, շուտ եկ։

*[Oswald exits.]*

GONERIL [cont.]
Ոչ, ոչ, իմ լո՛րդս։ Ոչ, ձեր կաթնահամ այդ հեզութիւնը եւ ձեր ընթացքը ես չեմ պարսաւում, բայց,

ներեցէք ինձ, աւելի տեղիք կայ ձեզ կշտամբելու իբրեւ անխոհեմ, քան թէ գովելու ձեր մեղմութիւնը։

ALBANY.
Թէ ձեր աչքերը որչափ սրատես են, չեմ կարող ասել։ յաճախ ձգտելով դէպ լաւագոյնը՝ կորցնում ենք լաւը։

GONERIL.
Ինչ՞, ուրեմն։

ALBANY.
Լաւ, լաւ, գործը ցոյց կը տայ։

*[They exit.]*

]͏[͏[

ACT I. SCENE V.
Court before the Duke of Albany's Palace. Lear, Kent and the Joker enter.

LEAR.
Դու առաջ անցիր եւ այս նամակը տար Գլոստեր։ Քո իմացածներիցդ ոչինչ մի յայտնիր իմ աղջկան, բացի միայն նրանից, ինչ որ պէտք է պատասխանես նրա հարցումներին իմ նամակի վերաբերմամբ։ Եթէ շատ շտապ չերթաս, ես քեզանից առաջ այնտեղ կը լինեմ։

KENT.
Տէր իմ, ես քուն չեմ մտնի, մինչեւ ձեր նամակը չյանձնեմ։

*[Kent exits.]*

JOKER.
Եթէ մարդուս ուղեղը կրունկների մէջ լինէր, ձմայթ չէ՞ր ունենայ։

LEAR.
Այո՛, տղաս։

JOKER.
Ուրեմն, խնդրեմ, դու ուրախ կաց. քո խելքդ երբեք հողաթափի պէտք չի ունենայ։

LEAR.
Այո՛, տղաս։

JOKER.
Կը տեսնես, որ միւս աղջիկդ էլ քեզ հետ քաղցրութեամբ կը վարուի, որովհետեւ, թէեւ նա այնքան նման է սրան, որչափ մի վայրի խնձոր մի ընտանի խնձորի, այսուհանդերձ, ես կարող եմ ասել, ինչ որ կարող եմ ասել։

LEAR.
Լաւ. ի՞նչ կարող ես ասել, տղա՛ս։

JOKER.
Նրա համն էլ այնքան նման կը լինի սրա համին, որչափ մի վայրենի խնձոր մի վայրենի խնձորին։ Կարո՞ղ ես ասել, թէ ինչո՞ւ մարդուս քիթը իր դէմքի մէջտեղն է դրուած։

LEAR.
Ոչ։

JOKER.
Նրա համար, որ աչքերից մէկը քթի այս կողմը լինի, միւսը՝ այն կողմը. որպէսզի, եթէ մարդ չկարողանայ մի բանի հոտն առնել, գոնէ կարողանայ տեսնել։

LEAR.
Ես նրա դէմ անիրաւութիւն գործեցի։

JOKER.
Կարո՞ղ ես ասել, թէ ոստրէն ինչպէ՞ս է շինում իր խեցին։

LEAR.
Ոչ։

JOKER.
Ես էլ չեմ կարող, բայց կարող եմ ասել, թէ ինչու խխունջը տնակ ունի։

LEAR.
Ինչո՞ւ։

JOKER.
Նրա համար, որ գլուխը դնի նրա մէջ, եւ ոչ թէ նրա համար, որ տայ իւր աղջիկներին եւ իր եղջիւրները

անպատսպար թողնի։

LEAR.
Ես պէտք է մոռանամ իմ բնութիւնը։ Այսքան գորովալից մի հա՞յր։ - Ձիերս պատրա՞ստ են։

JOKER.
Քո աւանակներդ գնացել են՝ ձիերդ բերեն։- Այն պատճառը, թէ ինչու եօթ աստղերը եօթից աւելի չեն, մի սքանչելի պատճառ է։

LEAR.
Որովհետեւ ութը հատ չե՞ն։

JOKER.
ճիշտ, դու մի լաւ խեղկատակ կարող ես լինել։

LEAR.
[Thoughtfully.] Բռնի ետ առնել։ Օ՜ հրէշային ապերախտութիւն։

JOKER.
Եթէ դու իմ խեղկատակը լինէիր, ես քեզ ծեծել կը տայի, որ ժամանակից առաջ ես ծերացել։

LEAR.
Ինչո՞ւ։

JOKER.
Դու ծերացած չպէտք է լինէիր խելքի հասնելուց առաջ։

LEAR.
Ո՛հ, գթած երկինք, մի թոյլ տա դու ինձ խելագար դառնալ։ Համբերութիւն տուր։ Չեմ ուզում խենթանալ։

*[A Nobleman enters.]*

LEAR [cont.]
Ձիերս պատրա՞ստ են։

NOBLEMAN.
Պատրաստ են, տէր իմ։

LEAR.

Եկ, տղաս, գնանք։

JOKER.

Այն օրիորդը, որ հիմա ծաղրում է իմ ծերութեան, այլեւս կոյս չի մնայ, երբ օրը գայ փորձութեան։

*[They exit.]*

][][

## ACT II. SCENE I.

A court within the Castle of the Earl of Gloucester. Edmund and Curan enter.

EDMUND.

Ողջոյն քեզ, Կուրան։

CURAN.

Եւ ձեզ, պարոն։ Ես ձեր հօր մօտ էի եւ նրան տեղեկութիւն տուի, որ Կորնուալի դուքսը եւ Ռեգանը՝ նրա դքսուհին, այս գիշեր նրա մօտ կը լինեն։

EDMUND.

Այդ ի՞նչ բան է։

CURAN.

Ճիշտ որ չգիտեմ։ Դուք լսած կը լինէք տարածուած լուրերը. ուզում եմ ասել՝ այն լուրերը, որ դեռ փսփսալով են ասում միմեանց ականջի։

EDMUND.

Ոչինչ չեմ լսած։ Ասա, խնդրեմ, ի՞նչ լուրեր են։

CURAN.

Չէ՞ք լսել, որ Կորնուալի եւ Ալբանի դուքսերի մէջ, հաւանական է, որ պատերազմ բացուի։

EDMUND.

Ոչ մի բառ։

CURAN.

Լաւ, շուտով կը լսէք։ Մնաք բարով, պարոն։

*[Exits.]*

EDMUND.
Դուքսն այստե՞ղ, ա՞յս գիշեր, շատ լա՛ւ, սքանչելի՛։ Սա ինքն է հիւսւում իմ ոստայնիս մէջ։ Հայրս մարդ է դրել՝ եղբօրս բռնելու. ես մի դեր ունեմ, շատ փափուկ մի դեր, որ պէտք է խաղամ։ Փո՛յթ եւ բա՛խտ, ի գո՛րծ։ Եղբա՛յր, ինձ նայիր։ Բան պէտք է ասեմ։ Ցա՛ծ եկ, եղբայր։ ո՞ւր ես։

*[Edgar enters.]*

EDMUND [cont.]
Հայրս քեզ է փնտրում։ Ո՛հ, փախի՛ր այստեղից, տեղդ իմացել են։ Գիշերը քեզ այժմ նպաստաւոր է։ Միթէ՞ բան ես ասել Կորնուալի դէմ. նա հէնց այս գիշեր գալիս է այստեղ եւ շատ շտապով, Ռեգանն էլ՝ իր հետ։ Ոչի՞նչ չես ասել՝ ի նպաստ նրա, ալբանիի դէմ։ Միտ բեր։

EDGAR.
Ոչ մի բառ։

EDMUND.
Ոտքի ձայն եկաւ, հայրս գալիս է։ Ների՛ր։ բայց գործս կեղծելու համար հարկադրուած եմ սուր քաշել վրադ։

*[Draws out sword.]*

EDMUND [cont.]
Դու էլ սուր քաշիր եւ այնպէս ցոյց տուր, որ պաշտպանւում ես։ Հիմա նահանջիր։ Անձնատու՛ր եղիր։ Ե՛կ իմ հօր առաջ։ Օհօ՛, ճրագ բերէք։ Փախիր դու, եղբայր։ Ջահե՛ր, ջահե՛ր բերէք։ Լաւ, գնաս բարով։

*[Edgar exits.]*

EDMUND [cont.]
Եթէ ինքս ինձնից քիչ արիւն հանեմ, այդ կարծել կը տայ, որ խիստ եմ կռուել։ [Wounds himself.] Գինովներ եմ տեսել, որ իբրեւ կատակ՝ սրանից աւելի վնասել են իրենց։ Հա՛յր, հա՛յր, կանգնի՛ր, կանգնի՛ր, օգնութիւն չկա՞յ։

*[Gloucester and Servants enter.]*

GLOUCESTER.
Ինչ՞ եղաւ, Էդմոնդ, ո՞ւր է այդ սրիկան։

EDMUND.
Ահա այստեղ էր, այս մթութեան մէջ, սուրը դուրս քաշած, եւ մրմնջում էր չար կախարդանքներ՝ խնդրելով լուսնից, որ նրա պաշտպան տիրուհին լինի։

GLOUCESTER.
Բայց որտե՞ղ է այժմ։

EDMUND.
Նայեցէք, տէր իմ։ Արիւն է գալիս։

GLOUCESTER.
Ո՞ւր է այդ սրիկան։

EDMUND.
Այս կողմ փախաւ, տէ՛ր։ Երբ ոչ մի կերպով չկարողացաւ։

GLOUCESTER.
Բռնեցէ՛ք նրան, վազէ՛ք ետեւից։

*[Servants exit.]*

GLOUCESTER [cont.]
«*Ոչ մի կերպով*» ի՞նչ։

EDMUND.
Համոզել, որ ես ձեզ սպանէի։ Բայց ես, մերժելով նրան, ասացի, որ վրէժխնդիր աստուածութիւնքը ուղղում են իրենց բոլոր շանթերը հայրասպանի դէմ։ Նրան խօսեցի այն բազմապատիկ սերտ կապերի վրայ, որոնք կապում են որդուն իր հօր հետ։ Մէկ խօսքով, տէր իմ, երբ որ նա տեսաւ՝ որչա՜փ զզւանքով հակառակ էի նրա հրէշաւոր դիտաւորութեան, կատաղի շարժմամբ, մերկացուած սրով անպաշտպան անձիս դէմ յարձակում գործեց եւ թեւս խոցեց։ Բայց երբ որ տեսաւ, որ խիզախ ոգիս՝ իր դատի մէջ խրոխտ, դիմադիր եղաւ, կամ թէ սարսափած այն աղաղակից, որ արձակեցի, յանկարծ խոյս տուաւ։

GLOUCESTER.
Թող հեռու փախչի, նա այս երկրի մէջ չի կարող խոյս տալ եւ բռնուի թէ չէ, պէտք է շնորհ տանի։ Դուքսն, ազնիւ տէրս, պետ եւ պաշտպանս, այս գիշեր գալիս է, եւ յանուն նրա մի ընդհանուր ազդ կը հրատարակեմ, որ ով որ գտնի այդ մարդասպանին եւ բերի նրան դէպի կախաղան, արժան կը լինի մեր վարձատրութեան, իսկ ով որ ծածկի, վճիռը մահ է։

EDMUND.
Երբ ջանք արեցի համոզել նրան, որ նա հրաժարուի իր նպատակից, եւ տեսայ, որ նա անդրդուելի է, շատ խիստ խօսքերով ես սպառնացի իր դաւը յայտնել։ Նա պատասխանեց. «Դու, անժառա՛նգ բիճ, միթէ՞ կարծում ես, որ երբ ես ստեմ քո ասածները, քո արժանիքը, անկեղծութիւնը, ազնուութիւնը կարող կը լինեն հաւատ ներշնչել դէպի խօսքերդ։ Ոչ, երբ ուրանամ (Ինչպէս որ կ՝անեմ), եթէ գիրս անգամ իբրեւ փաստ բերես, ես այդ բոլորը վերագրել կը տամ քո դաւադրութեան, մեքենայութեանց եւ քո անիծեալ նենգութիւններիդ։ Տխմար կը լինի ամբողջ աշխարհը, թէ չհաւատայ, որ իմ մահուանից քո ակնկալած մեծ օգուտները խիստ բեղմնաւոր, զօրեղ խթան են, որ իմ մահը քեզ ցանկալի դարձնեն»։

GLOUCESTER.
Օ՛ դու հրէշաւոր, կարծրացած սրիկա՛յ, ուզում է ուրեմն նամակն ուրանա՞լ։ Նա ինձնից չի՛ ծնուել։ Պէտք է փակել տամ նաւահանգիստը, չպէտք է թոյլ տամ՝ այդ սրիկան փախչի. պէտք է դուքսը ինձ այդ շնորհն անի։ Բայց պէտք է նաեւ նրա պատկերը ուղարկեմ ամէն կողմ, որ ամենայն ոք այս պետութեան մէջ ճանաչի նրան։ Իսկ դու, իմ ազնիւ բնական զաւակ, ես ճար կը գտնեմ՝ քեզ իմ կալուածիս ժառանգն անելու։

*[Cornwall, Reagan and Attendants all enter.]*

CORNWALL.
Այդ ի՞նչ բաներ են, ազնիւ բարեկամ։ Հազիւ տեղ հասայ (Այսինքն՝ հէնց այժմ) եւ տարօրինակ լուրեր լսեցի։

REGAN.
Եթէ այդ ճիշտ է, որեւէ պատիժ այդ յանցաւորին անբաւարար է։ Ինչպէ՞ս է կոմսը։

GLOUCESTER.
Ա՛խ, տիկին, իմ խեղճ ծերունի սիրտս ճայթել է, ճայթել։

REGAN.
Ի՞նչ, հօրս սա՞նը դաւ դնի ձեր կեանքին։ Նա՞, որին հայրս կնքահայր եղաւ, ձեր Էդգար որդի՞ն։

GLOUCESTER.
Օ՜! տիկի՛ն, տիկի՛ն, ամօթահար եմ. երանի ծածկել կարողանայի։

REGAN.
Նա էլ ընկեր չէ՞ր այն ամբարտաւան ասպետների հետ, որոնք իմ հօրս միշտ ուղեկից են։

GLOUCESTER.
Չգիտեմ, տիկին. շատ վատ է, շատ վա՜տ։

EDMUND.
Ճիշտ է, տիրուհի։ Նա այդ խմբիցն էր։

REGAN.
Ուրեմն ի՜նչ զարմանք, որ այդպիսի չար մի միտք յղացաւ, նրանք են դրդել, որ նա սպանի այս խեղճ ծերուկին, որ յետոյ վատնեն նրա ստացուածքը։ քոյրս այս գիշեր ինձ գիր էր գրել այդ մարդկանց մասին. եւ նա ինձ այնպէս զգուշացրել է, որ եթէ նրանք ինձ մօտ ուզեն գալ, տանից դուրս կ՝երթամ։

CORNWALL.
Նոյնպէս ես, Ռեգա՛ն։ Էդմոնդ, լսում եմ, որ ցոյց էք տրուել մի որդիական ծնողասիրութիւն։

EDMUND.
Իմ պարտքն էր այդ, տէր։

GLOUCESTER.
Սա՛ յայտնեց դաւը. եւ տեսէք՝ ինչպէս վէրք է ստացել, երբ ջանացել է, որ բռնի նրան։

CORNWALL.
Մարդ ուղարկե՞լ էք, որ ձերբակալեն։

GLOUCESTER.
Այո՛, ազնիւ տէր։

CORNWALL.
Եթէ բռնուի, էլ երկիւղ չկայ, որ մէկ էլ վնասի, ի գործ դրէք դուք իշխանութիւնս, ինչպէս ձեր կամքն է։ Գալով ձեզ, Էդմոնդ. որի գովելի հնազանդութիւնը այսքան լաւ փայլեց հէնց այս րոպէիս, այսուհետեւ մերն էք։ Մենք շատ կարօտ ենք ձեզ պէս անձնուէր, անկաշառ մարդկանց եւ իսկոյն ձեր վրայ մենք ձեռք ենք դնում։

EDMUND.
Հաւատարմութեամբ կը ծառայեմ ձեզ, տէր իմ, եթէ ոչ այլ արժանիքով։

GLOUCESTER.
Ես նրա կողմից շնորհակալ եմ։

CORNWALL.
Չգիտէ՞ք՝ ինչու եկել ենք ձեզ մօտ։

REGAN.
Այսքան տարաժամ, այս մութ գիշերը ուղեւորուելով։ Ծանր գործեր կան, իմ ազնիւ Գլոստեր, եւ դրանց համար հարկաւոր են մեզ ձեր խորհուրդները։ Հայրս գրել է ինձ, նոյնպէս եւ քոյրս, թէ նրանց միջեւ վէճեր են ծագել։ Յարմար չտեսայ պատասխանները մեր տնից գրել. Թղթաբերները պէտք է այստեղից պատասխան տանեն։ Դե՛հ, մեր ծերունի ազնիւ բարեկամ. սփոփեցէք ձեզ եւ մեզ շնորհեցէք ձեր խորհուրդները մեր գործի մասին, որ պահանջում է անյապաղ վճիռ։

GLOUCESTER.
Պատրաստ եմ, տիկին, ձեր ծառայութեան։ Բարով էք, եկել։

*[They exit.]*

][][

ACT II. SCENE II.
Before Gloucester's Castle. Kent and Oswald enter, severally.

OSWALD.
Բարի լոյս քեզ, բարեկամ։ Այս տանի՞ց ես դու։

KENT.
Այո՛։

OSWALD.
Ո՞ւր կարող ենք տեղաւորել մեր ձիերը։

KENT.
Տղմի մէջ։

OSWALD.
Խնդրում եմ, թէ ինձ կը սիրես, ասա ինձ։

KENT.
Ես քեզ չեմ սիրում։

OSWALD.
Պա՛հ, իմ էլ շատ հոգը չի։

KENT.
Եթէ Լիպսբրիի փարախում ձեռքս ընկնէիր, ես քեզ կը սովորեցնէի՝ հոգդ կը լինէ՞ր, թէ՞ ոչ։

OSWALD.
Ինչո՞ւ ես այդպիսի բաներ ասում ինձ. ես քեզ չեմ ճանաչում։

KENT.
Իսկ ես քեզ ճանաչում եմ, ա՛յ մարդ։

OSWALD.
Ո՞վ եմ ես քո կարծիքով։

KENT.
Մի անպիտան, մի սրիկայ, մի պնակալէզ, մի անզգամ, գոռոզ, տխմար, մուրացիկ, երեք ձեռք հագուստի տէր, հարիւր լիրանոց, կեղտոտ բրդէ գուլպայ հագնող սրիկայ, մի սպիտակալեարդ, դատաստանի դիմող սրիկայ, մի պոռնիկի ձագ, հայելու նայող, չափազանց հաճոյակատար, սեթեւեթ թշուառական, մէկ սնդուկ ժառանգող ստրուկ, այնպիսի մէկը, որ պատրաստ է կաւատ դառնալ՝ մի ծառայութիւն անելու համար, եւ որը չէ այլ ինչ, եթէ ոչ՝ մի խառնուրդ սրիկայի, մուրացկանի, վատասրտի, կաւատի։ Մի խառնածին քած շան ձագը եւ ժառանգը։ Մի մարդ, որ եթէ ուզի մերժել այս իր տիտղոսներից ամենափոքրիկ վանկը, այնքան կը ծեծեմ, որ շան պէս կը կնձկնձայ։

OSWALD.
Վա՛հ, ի՜նչ հրէշաւոր մարդ ես եղել դու, որ այդպէս անպատւում ես մի անձի, որ ո՛չ քեզ ճանաչում է, ո՛չ էլ քեզ ծանօթ է։

KENT.
Ի՜նչ պնդերես անառակն ես եղել, որ ուրանում ես ինձ ճանաչելդ։ Երկու օր առաջ չէ՞ր, որ քեզ գետին զարկեցի եւ թագաւորի առաջ քեզ ծեծ տուի։ Սուրդ քաշիր, թշուառական, թէեւ գիշեր է, բայց լուսինը փայլում է։ Քեզ այնպէս անեմ, որ լուսնի լոյսը միւս կողմիցդ դուրս գայ։ Սուրդ քաշի՛ր, դու պոռնիկի ձագ, խայտառակ, սափրիչի ընկեր, սուրդ դուրս քաշիր։ Իր սուրը մերկացնելով։

OSWALD.
Հեռացի՛ր։ Ես քեզ հետ գործ չունեմ։

KENT.
Սուրդ քաշիր, թշուառակա՛ն։ Դու նամակներ ես բերել թագաւորի դէմ եւ կուսակից ես դարձել խրձիկ-

սնափառութեան՝ նրա հօր վեհափառութեան դէմ։ Սուրդ քաշիր, թշուառական, եւ կամ ոլոքներդ այնպէս կը ջարդեմ, որ սուրդ քաշիր, թշուառական, պաշտպանուի՛ր։

OSWALD.
Օգնեցէ՛ք, օգնեցէ՛ք, սպանու՛մ են։

KENT.
[Begins beating him.] Կռուի՛ր, ստրուկ, դէմ դիր, թշուառական, դէմ դիր, պաճուճուող ստրուկ, պաշտպանուիր։

OSWALD.
Օգնեցէ՛ք, օգնեցէ՛ք. սպանութի՛ւն, սպանութի՛ւն։

*[Cornwall, Regan, Gloucester and Edmond enters with a naked sword.]*

EDMUND.
Ին՞չ կայ, ի՞նչ է պատահել, բաժանուեցէ՛ք։

KENT.
Եթէ կամենում էք, համեցէք, փոքրիկ պարոն։ Եկէք, ես քո ճաշն էլ կեփեմ։ Հայդէ՛, երիտասարդ պարոն, առաջ եկէք։

GLOUCESTER.
Սու՛ր, զէնք, ի՞նչ է պատահել այստեղ։

REGAN.
Սրանք թագաւորի եւ իմ քրոջ կողմից եկած թղթաբերներն են։

CORNWALL.
Ձեր վէճը ինչի՞ մասին է, խօսեցէ՛ք։

OSWALD.
Շունչս կտրուել է, միլո՛րդ։

KENT.
Զարմանալի չէ։ Այնքա՜ն քաջութիւն ցոյց տուիր որ։ Դու նուա՛ստ թշուառական, բնութիւնը քեզ ուրանում է . պէտք է մի դերձակ քեզ շինած լինի։

CORNWALL.
Դու զարմանալի մարդ ես, դերձակը մա՛րդ շինի։

KENT.
Այո՛, պարոն, դերձակը, մի քարտաշ կամ ներկարար չէին կարող այսքան անպիտան բան շինել, նոյնիսկ եթէ երկու ժամ աշխատէին։

CORNWALL.
Բայց, ասացէք, ինչի՞ց ծագեց ձեր վէճը։

OSWALD.
Այս ծեր թշուառականը, որի կեանքը խնայեցի՝ յարգելով նրա սպիտակ մօրուքը։

KENT.
Դու շան ձագ, զեդ, անօգուտ տառ։- Միլո՛րդ, եթէ ինձ հրաման կը տաք, ես այս բիրտ սրիկային սանդի մէջ կը ծեծեմ։- Դո՞ւ խնայեցիր իմ սպիտակ մօրուքը, դո՞ւ, խաղտուտի՛կ։

CORNWALL.
Լռի՛ր, անպիտա՛ն, բի՛րտ, թշուառակա՛ն։ Պատկառել չգիտե՞ս։

KENT.
Այո՛, տէր, գիտեմ. բայց բարկութիւնն էլ իրաւունքներ ունի։

CORNWALL.
Ինչո՞ւ ես բարկացել։

KENT.
Հէնց նրա համար, որ մի այսպիսի թշուառականը համարձակւում է սուր կրել մէջքին, երբ ազնուութեան նշոյլ չի կրում։ Այսպէս ժպտադէմ ստահակները մկների նման կրծում կտրում են այն սուրբ կապերը, որոնք շատ պիրկ են խզուելու համար։ Շոյում են ամէն կիրք, որ իրենց տիրոջ սրտում յուզւում է, կրակի վրայ ձէթ են սրսկում. սառած սրտի վրայ ձիւն են կուտակում. ժխտում են, հաստատում եւ ալկիոնի պէս իրենց կտուցը միշտ շուռ են տալիս դէպի այն կողմ, ուրկից փչում են հողմերն իրենց տէրերի քմահաճոյքի. եւ շների պէս ոչինչ չգիտեն, եթէ ոչ՝ հետեւել։ (Օսուալդին։) Ժանտա՛խտը զարկի ընկնաւոր դէմքդ, դու ծիծաղո՞ւմ ես խօսքերիս վրայ, որպէս թէ խենթ եմ։ Լսի՛ր, սագի ձագ, եթէ ճանկս ընկնես սարումի դաշտում, քեզ կառաչելով ես կը հալածեմ մինչեւ Կամելոտ։

CORNWALL.
Ի՞նչ է, խե՞նթ ես, ծերուկ։

GLOUCESTER.
Ինչո՞ւ կռուեցիք. դու մեզ այն ասա։

KENT.
Չեն եղել երբեք երկու հակառակ՝ այնչափ հակակիր, որչափ ես եւ այս թշուառականը։

CORNWALL.
Ինչո՞ւ ես նրան այդպէս հայհոյում, նրա մեղքն ի՞նչ է։

KENT.
Նրա կերպարանքն ինձ հաճելի չէ։

CORNWALL.
Ոչ էլ իմս, անշուշտ։ Ոչ էլ սրանը։ Ոչ էլ սրանը։

KENT.
Տէր, իմ գործն է ճշմարիտ խօսել։ այո՛, տեսել եմ իմ ժամանակին լաւագոյն դէմքեր, քան այժմ տեսնում եմ այս ուսերի վրայ, իմ աչքիս առաջ։

CORNWALL.
Սա նրանցից է, որին մի անգամ գոված կը լինեն կոպտութեան համար, եւ որ այնուհետ միշտ ձեւացնում է մի լիրբ բրտութիւն՝ բռնի փոխելով իր արտաքինը ներքինի ընդդէմ։ «Շողոքորթելու ընդունակ չէ նա. մի ազնիւ մարդ է, պէտք է ճիշտն ասէ»։ Եթէ ընդունեն, շատ լաւ, եթէ ոչ՝ ինքը մեղք չունի, նա ճիշտն է խօսում, ես ճանաչում եմ այս սրիկաներին. այս մարդիկ իրենց անկեղծութեան մէջ ունեն աւելի խորամանկութիւն եւ ապականուած պիղծ նպատակներ, քան քսան տխմար գլուխ ծռողներ, որոնք մի քիչ շատ մեծարել գիտեն։

KENT.
[Sweetly.] Տէր իմ, ճշմարի՛տ. անկեղծ իսկութեամբ, եթէ ինձ թոյլ տայ ձեր մեծութիւնը, որի շնորհը այն լուսաճաճանչ պսակի նման, որ շողշողում է ֆեբոսի ճակատին։

CORNWALL.
Ի՞նչ ես ուզում ասել։

KENT.
Ուզում եմ ոճս փոխել, քանի որ դա այդքան ձեզ տհաճելի է։ Ես ընդունում եմ, տէր, որ շողոքորթ չեմ։ Նա, որ ձեզ խաբել է պարզ խօսելով, մի պարզ սրիկայ է եղել, ինչ որ ես չեմ կարող լինել, որչափ էլ խնդրէիք ինձ։

CORNWALL.
[To Oswald.] Ինչո՞վ ես սրան անարգանք հասցրել։

OSWALD.
Եւ ոչ մի կերպով։ Քանի օր առաջ արքան, իր տէրը, թիւրիմացութեամբ ուզեց ինձ զարկել, սա էլ միացած, նրա զայրոյթը շողոքորթելով, հետեւից հրեց ինձ եւ գետին զարկեց։ երբ ես ցած ընկայ, այնքան հայհոյեց, թքեց մրեց ինձ եւ քաջ ձեւացաւ որ թագաւորից գովեստ ստացաւ՝ յաղթած լինելով այնպիսի մէկին, որ անձնատուր էր, եւ այսօր կրկին, յիշելով նախկին իր քաջութիւնը սուր քաշեց ինձ վրայ։

KENT.
Չկայ ոչ մի հատ այս սրիկաներից եւ նուաստներից, որոնց մօտ Այաքս խաղալիք չլինի։

CORNWALL.
Կոճղեր բերեցէք։ Յամառ, ծեր սրիկայ։ Յարգելի գոռո՛զ, քեզ կը սովորեցնենք։

KENT.
Տէր, ես խի՛ստ ծեր եմ սովրելու համար, եւ բերել մի՛ տաք կոճղեր ինձ համար։ Ես թագաւորի ծառան եմ եւ այժմ նրա հրամանով եկել եմ ձեզ մօտ. դուք շատ քիչ յարգանք ցոյց տուած կը լինէք եւ սաստիկ յանդուգն չարակամութիւն դէպի իմ տիրոջ շնորհաշուք անձը՝ կոճղեր դնելով իր թղթաբերին։

CORNWALL.
Բերէ՛ք կոճղերը։ Երդւում եմ կեանքիս եւ պատուիս վրայ. նա մինչեւ կէսօր այնտեղ կը նստի։

REGAN.
Ի՞նչ, մինչեւ կէսօ՞ր։ Ոչ, մինչեւ գիշեր, ամբողջ գիշերն էլ։

KENT.
Տիկին, թէ ձեր հօր շունը լինէի, չպէտք է ինձ հետ այդպէս վարուէիք։

REGAN.
Բայց դու, լինելով նրա սրիկան, այսպէս կը վարուեմ։ Կոճղեր են բերում։

CORNWALL.
Սա հէնց այն գոյնի սրիկաներից է, որոնց նկատմամբ գրել է քոյրս։ Հայդէ՛, կոճղերը բերեցէք այստեղ։

GLOUCESTER.
Ես աղաչում եմ ձերդ մեծութեան՝ չանել այդ բանը ծանր է իր մեղքը։ Եւ բարի արքան, որ նրա տէրն է, անշուշտ, դրա համար կը պատժի նրան։ Սակայն այդպիսի մի անարգ պատիժ արժան է միայն

ամէնից ստոր սրիկաներին՝ իրենց գողութեանց եւ գռեհկական մեղքերի համար։ Թագաւորն, անշուշտ, կը վիրաւորուի, երբ այս աստիճան անարգուած լինի՝ յանձին իր յղած պատգամաւորի, որին այս կերպով դուք կաշկանդում էք։

CORNWALL.
Ինքս կը լինեմ պատասխանատուն։

REGAN.
Քոյրս աւելի՛ կը վիրաւորուի, որ իր թիկնապահին անարգուած է խիստ, ծեծի ենթարկուած, լոկ այն պատճառով, որ գործադրել է նրա հրամանը։

*[Kent is put in the stocks.]*

REGAN [cont.]
Եկ, ազնիւ տէրս, գնանք այստեղից։

*[All exit save Gloucester and Kent.]*

GLOUCESTER.
Ես շատ ցաւում եմ քո վրայ, բարեկամ։ Դուքսի կամքն է այդ։ Ամէն մարդ գիտէ, որ նրա յամառ բնաւորութիւնը չի թողնում անգամ, որ կողքիցն անցնեն կամ թէ դիմադրեն։ Դարձեալ քեզ համար ես կը միջնորդեմ։

KENT.
Մի՛ անէք, խնդրեմ. ես շատ եմ յոգնել ճամփորդութեան մէջ եւ անքուն մնացել, մի քիչ կը քնեմ, քիչ էլ կը սուլեմ։ Լաւ մարդու բախտը ներբանից կը բուսնի։ Տէր ընդ ձեզ, պարոն։

GLOUCESTER.
Դուքսն այս գործում պարսաւելի է. նրա արածը վատ հետեւանքներ կարող է թողնել։

*[Exits.]*

KENT.
Բարի՛ թագաւոր, քո գլխիդ եկաւ հին ասացուածը. անձրեւից փախար, ընկար ծովի մէջ։ Մօտ եկ, ով փարոս այս երկրագնդի, որ քո օժանդակ ճառագայթներով կ՝արդամ այս թուղթը։ Ոչ ոք հրաշք չի տեսնում, թշուառներից զատ։ Գիտեմ, այս գիրը կորդելիան է գրել. Բարեբախտաբար, նա լուր է առել իմ այս ծպտումից։ *«Իրերի անհեթեթ այս դրութիւնը առիթ է տալիս ինձ ջանք գործ դնել՝ այդ չարիքներին մի ճար անելու»։* Ո՛վ իմ տաղտկացած, իմ անքո՛ւն աչքեր, օգուտ քաղեցէք ձեր յոգնութիւնից, մի տեսնէք ամօթի այս բնակավայրը։ Բա՛խտ, բարի գիշեր։ Մէկ էլ ժպտա ինձ եւ մէկ

անգամ էլ անիւդ դարձրու։

*[Falls asleep.]*

][[

## ACT II. SCENE III.
Open countryside. Edgar enters.

### EDGAR.
Լսեցի իմ մասին յայտարարուածը եւ մի բարեբաստ ծառի խոռոչով ես ճողոպրեցի խուզարկութիւնից։ Չի մնացել ազատ մի նաւահանգիստ, ոչ մի տեղ, ուր որ պահապանները մի արտասովոր աչալրջութեամբ չխուզարկեն ինձ։ Քանի ես խոյս տամ, փրկուած կը մնամ։ Պէտք է ստանձնեմ ամէնից նուաստ եւ գձուձ ձեւը, որով երբեւէ թշուառութիւնը՝ իբրեւ անարգանք մարդկային ցեղի, նրան գազանի մօտեցրած լինի։ Երեսս տիղմով պիտի շաղախեմ, կողքերս ծածկեմ ցնցոտիներով եւ խառնիճաղանջ անեմ մազերս եւ իմ մերկութեամբ պէտք է դէմ դնեմ հողմերին եւ երկնի հալածանքներին։ Պէտք է ինձ ընտրեմ որպէս օրինակ բեդլամից ելած մուրացկաններին, որոնք շրջում են այս գաւառի մէջ, եւ որ մռնչուն աղաղակներով մխում են իրենց անզգայացած մերկ եւ պնդացած բազուկների մէջ ասեղներ, գամեր եւ փայտեայ փշեր եւ կամ խնկունու սրածայր ոստեր, եւ զարհուրելի այս կերպարանքով աղքատ գիւղերից, ագարակներից, ջրաղացներից եւ փարախներից մերթ լուսնոտական չարամաղթութեամբ, մերթ աղօթքներով մայր են ստանում, խեղճ Տրլիգուդ, խեղճ Նոոմ. այդ էլ մի բան է։ Իսկ ես, Էդգարս, ոչի՛նչ, ոչինչ եմ։

*[Exits.]*

][[

## ACT II. SCENE IV.
Before Gloucester's Castle with Kent in the stocks. Lear, a Knight and the Joker all enter.

### LEAR.
Զարմանալի՛ է, տնից մեկնել են, եւ ետ չեն դարձրել պատգամաբերիս։

### KNIGHT.
Որչափ իմացայ, դեռ երեկ գիշեր նրանք մեկնելու դիտում չունէին։

### KENT.
Ողջո՛յն, ազնիւ՛ տէր։

LEAR.
Վա՛հ, այդ ի՞նչ բան է։ Կատակի համա՞ր այդ ամօթալի ձեւն ես ստացել։

KENT.
Ոչ, տէր իմ։

JOKER.
Հա՛, հա՛, նայիր, ինչ սոսկալի ծնկակապեր է կրում։ Ձիերին գլխից են կապում, շներին եւ արջերին՝ վզից, կապիկներին՝ մէջքից եւ մարդկանց՝ ոտքերից։ Երբ մարդու ոտքերը չափազանց ուժեղ լինեն, նրան փայտէ գուլպաներ կը հագցնեն։

LEAR.
Ո՞վ անգիտացաւ քո աստիճանը, որ քո ոտքերին կապանքներ դրեց։

KENT.
Թէ՛ մին, թէ՛ միւսը, ձեր ուստրը եւ դուստրը։

LEAR.
Ո՛չ։

KENT.
Այո՛։

LEAR.
Ո՛չ, ասում եմ քեզ։

KENT.
Այո՛, ասում եմ ձեզ։

LEAR.
Ո՛չ, ո՛չ. չէին անի։

KENT.
Այո՛, արել են։

LEAR.
Արամազդը վկա՛յ, երդւում եմ, որ ո՛չ։

KENT.
Յունոնը վկա՛յ, երդւում եմ՝ այո՛։

LEAR.
Չէին համարձակուի այդպէս բան անել. ո՛չ, չէին կարող, չէին կամենայ։ Աւելի վատ է, քան սպանութիւն, կամաւ այդպիսի անարգանք հասցնել։ Պատասխանի՛ր ինձ պատշաճ շտապով, թէ արդեօք ինչպէ՞ս դու արժանացար կամ ենթարկուեցիր այդպիսի բախտի, դու՛, որ մեր կողմից առաքուած էիր։

KENT.
Տէր իմ, երբ հասայ ես նրանց տունը, նրանց յանձնեցի ձերդ բարձրութեան գրած նամակը։ Նախքան կանգնէի ծնկաչոք յարգանք մատուցանելուց, մի քրտնաթաթախ սուրհանդակ հասաւ՝ լեզուն ցամաքած եւ կէս շնչասպառ, եւ իր տիրուհի գոներիլի կողմից ողջոյններ ասաց եւ ընդմիջելով մի նամակ յանձնեց, որ շուտ կարդացին։ Երբ տեղեկացան պարունակութեանն, շուտ ժողովեցին իրենց մարդերին եւ ձի հեծնելով՝ ինձ հրամայեցին հետեւել նրանց, մինչեւ հաճենան տալ պատասխանը։ Իսկ այդ ժամանակ ես հանդիպեցի միւս թղթաբերին, որի գալուստը, որպէս դիտեցի, թունաւորել էր յաջողութիւնս։ Իսկ ես, գտնելով առաւել կորով, քան թէ խելք իմ մէջ, սուրս քաշեցի։ Նա երկչոտի պէս գոռում-գոչումով տունը թնդացրեց։ Ձեր փեսան եւ դուստրը իմ այդ յանցանքը արժանի գտան այս անարգանքին, որ, արդ, կրում եմ։

JOKER.
Ձմեռը դեռ վերջացած չի, եթէ վայրի սագերն այդ կողմ են թռչում։
*Le père qui porte des haillons*
*Rend ses enfants aveugles;*
*Mais le père qui porte la bourse*
*Verra ses enfants affectionnés:*
*La Fortune, cette insigne prostituée,*
*Ne tourne jamais sa clef pour le pauvre:*
Բայց, այսուհանդերձ, դու քո սիրելի աղջիկներից այնքան ցաւեր ես քաշելու, որքան դրամ չես կարող հաշուել մի ամբողջ տարում։

LEAR.
Օ՜! ինչպէ՜ս այս ախտը գրոհ է տալիս դէպի իմ սիրտս։ Ա՜խտ հիստերական, ցա՜ծ մագլցող վիշտ, ցածն է քո տարրդ։ Ո՞ւր է այդ դուստրը։

KENT.
Ներսն է, կոմսի հետ։

LEAR.
Մի՛ հետեւէք ինձ, մնացէք այստեղ։

*[Exits.]*

KNIGHT.
Չե՞ս գործել արդեօք մի ուրիշ յանցանք՝ պատմածներիցդ զատ։

KENT.
Ոչ։ Բայց ինչպէ՞ս է, որ արքայի հետ այսքան քիչ մարդ կայ։

JOKER.
Եթէ այդ հարցման համար ոտքերդ կոճղերի մէջ դրած լինէին, արժանի կը լինէիր։

KNIGHT.
Ինչո՞ւ, խեղկատակ։

JOKER.
Մենք քեզ մրջիւնի մօտ վարժարան կը դնենք՝ սովորեցնելու համար, որ ձմեռը չեն աշխատում։ Ով որ հետեւում է իր քթին, նա առաջնորդւում է իր աչքերից, ի բաց առեալ կոյրերը, եւ քսան քթի մէջ մէկ քիթ չկայ, որ չզգայ, թէ ով է գարշ հոտ բուրում։ Երբ մի մեծ անիւ բլրից ցած է գլորւում, բաց թող, եթէ ոչ՝ դու վիզդ կը կոտրես՝ հետեւելով նրան, բայց եթէ կայ մի մեծը, որ բլրից վերեւ է գնում, դու էլ կպիր ետեւից, որ քեզ էլ հետը քարշ տայ։ Երբ մի խելացի մարդ քեզ աւելի լաւ խորհուրդ տայ, իմս ետ տուր ինձ։ Ես ուզում եմ, որ անպիտան մարդիկ միայն հետեւեն իմ խորհրդին, քանի որ տուողը մի խեղկատակ է։
*Celui, monsieur, qui sert et cherche son intérêt*
*Et ne suit que pour la forme,*
*Pliera bagage dès qu'il commencera à pleuvoir;*
*Et te laissera exposé à l'orage;*
*Mais je demeurerai: le fou restera*
*Et laissera le sage s'enfuir,*
*Gredin devient le fou qui s'enfuit;*
*Mais ce n'est pas un fou que le gredin, pardieu:*

KENT.
Որտե՞ղ ես սովորել այդ, խենթու՛կ։

JOKER.
Ո՛չ կոճղերի մէջ, խենթ։

*[Lear and Gloucester enter.]*

LEAR.
Մերժե՞ն խօսել ինձ հետ. հիւանդ են, յոգնա՛ծ. ամբողջ գիշերը ճամփայ են եկել, պարզ պատրուակնե՛ր. Ապստամբութեան եւ խուսափելու պարուրանքներ են։ Մի աւելի լաւ պատասխան բեր ինձ։

GLOUCESTER.
Իմ սիրելի տէր, ձեզ քաջ յայտնի է մեր դուքսի կրակոտ բնաւորութիւնը, եւ թէ ի՞նչ աստիճան անդրդուելի է իր ընթացքի մէջ։

LEAR.
Վրէ՛ժ, ժանտա՛խտ, մա՛հ, շփո՛թ։ Ինչպէ՞ս, կրակո՞տ. ի՞նչ բնաւորութիւն։ Է՛յ, Գլոստե՛ր, Գլոստե՛ր, ես պէտք է խօսեմ կորնուալի դուքսի եւ իր կնոջ հետ։

GLOUCESTER.
Բայց, ազնիւ տէր իմ, տեղեկացրել եմ նրանց այդ մասին։

LEAR.
Տեղեկացրու նրանց, հասկանո՞ւմ ես ինձ, ա՛յ մարդ։

GLOUCESTER.
Այո՛, տէ՛ր։

LEAR.
Վա՛հ, թագաւորը ուզում է խօսել կորնուալի հետ, սիրելի հայրը ուզում է խօսել իր աղջկայ հետ եւ ծառայութիւն պահանջել նրանից։ Գիտե՞ն նրանք այս։ Ո՛վ իմ շունչ եւ կեանք. կրակո՞տ։ Կրակո՞տ դուքս։ Ասա տաք դուքսին, բայց ոչ։ ոչ դեռեւս ... գուցէ հիւանդ է. տկարութիւնը միշտ քամահրում է ամենայն տեսակ պարտականութիւն, որը կապուած է առողջութեան հետ։ Մենք մենք չենք այլեւս, երբ որ բնութիւնը, ճնշուած լինելով, հարկադրում է հոգուն տառապել մարմնի հետ։ Պէտք է համբերեմ. եւ բարկացած եմ կոյր զայրոյթիս դէմ, որ ընդունեցի ախտաժէտ յոյզը առողջութեան տեղ։ Անիծեա՛լ վիճակ։ Բայց ինչո՞ւ պէտք է սա այստեղ նստի. նրանց այս գործը ինձ համոզում է, որ դուքսի եւ կնոջ առանձնանալը մի խաղ է միայն։ Ետ տան ինձ ծառաս։ [To Gloucester.] Գնա ասա դուքսին եւ նրա կնոջը, որ պէտք է իսկոյն խօսեմ նրանց հետ։ Շո՛ւտ, ա՛յս րոպէիս, հրամայիր նրանց դուրս գալ, լսել ինձ, թէ ոչ՝ ես կ՝երթամ եւ նրանց դռան մօտ այնպէս սաստկածայն կը թմբկահարեմ, մինչեւ որ շռինդը մահացնի քունը։

GLOUCESTER.
Ես կամենում եմ՝ ամէն բան ձեր մէջ խաղաղ վերջանայ։

*[Exits.]*

LEAR.
Ա՛խ, իմ սիրտ, յուզուո՛ղ սիրտ։ Բայց ոչ, ցած իջիր։

JOKER.
Խօսիր սրտիդ հետ, քեռի, ինչպէս խոհարարուհին խօսում էր անքիլոսների հետ, երբ որ նրանց ողջ-ողջ դնում էր խմորի մէջ։ Ճիպոտով զարկում էր նրանց կատարներին եւ ասում. «*Ցա՛ծ իջէք, թշուառնե՛ր, ցած*»։ Դրա եղբայրն էր, որ այնքան սիրում էր իր ձիուն, որ նրա խոտին կարագ էր քսում։

*[Cornwall, Reagan, Gloucester and Servants all enter.]*

LEAR.
Բարեւ երկուսիդ։

CORNWALL.
Բարեւ ձեր մեծութեան։

*[Kent is set free.]*

REGAN.
Ուրախ եմ, արքայ, որ ձեզ տեսնում եմ։

LEAR.
Ռեգան, կարծում եմ, որ դու ուրախ ես, եւ տեղիք ունեմ այդպէս կարծելու. թէ գիտենայի, որ դու ուրախ չես, ես պսակալոյծ պէտք է լինէի քո մօր շիրիմից՝ թաղած լինելով շնացող մի կին։ [To Kent.] Ահ, ազա՞տ ես դու, բայց թող այդ մնայ ա՛յլ ժամանակի։ Սիրեցեա՛լ Ռեգան, քոյրդ շատ փուչն է, Օ՜! Ռեգան, Ռեգան, նա կապեց այստեղ ապերախտութեան գիշատիչ անգղը, այստեղ՝ սրտիս վրայ։ Հազիւ թէ քեզ հետ խօսել կարող եմ։ Դու չես հաւատայ՝ ի՞նչ ապականուած ձեւով։ Օ՜! Ռեգան։

REGAN.
Խնդրում եմ, տէր իմ, համբերող եղէք։ Աւելի յոյս կայ, որ դուք անկարող գտնուած լինէք գնահատել նրան, քան նա՝ զանցառու իր պարտքերի մէջ։

LEAR.
Ի՞նչ, ի՞նչ ասացիր։

REGAN.
Ես չեմ մտածում, որ քոյրս իր պարտքը զանց արած լինի։ Եթէ պատահմամբ նա զսպած լինի ձեր ասպետների խռովութիւնները, անշուշտ, այնպիսի հիմունքներ ունի, եւ այնչափ առողջ նպատակ է այդ, որ նա մաքուր է ամէն պարսաւից։

LEAR.
Անէ՜ծքս գլխին։

REGAN.
Տէր իմ, դուք ծեր էք, բնութիւնը ձեր մէջ այժմ կանգնած է իր ասպարէզի վերջին եզերքին. աւելի լաւ է, որ ձեր վիճակը եւ ղեկը յանձնէք խոհեմ մի մարդու, որ ձեր դրութիւնը ձեզնից լաւ գիտէ։ Խնդրում եմ ուրեմն, որ վերադառնաք կրկին քրոջս մօտ եւ ասէք նրան, որ սխալուած էք։

LEAR.
Ես նրո՞ւմ խնդրեմ։ Գիտէ՞ք, թէ որչափ պատիւ կը բերի մի գերդաստանի. «Սիրելի դստրիկ, խոստովանում եմ, որ ծերացել եմ. Ծերերն անպէտք են. ծնկաչոք խնդրում եմ Ծունկի գալով, որ բարեհաճես շնորհել ինձ հագուստ, մահիճ եւ ապրուստ»։

REGAN.
Տէր իմ, բաւական է, այդ կատակները ձեզ անվայել են, դարձէք քրոջս մօտ։

LEAR.
Ո՛հ, երբե՛ք, Ռեգա՛ն, նա շքախմբիս կէսը պակսեցրեց, մռայլ հայեացքներ գցեց ինձ վրայ եւ օձի լեզուով խայթեց ինձ սրտից։ Թող երկնի բոլոր պատուհասները թափուեն ապերախտ իր գլխի վրայ։ Զարկեցէք նրա մատաղ ոսկրերը, ո՜վ ժանտ խորշակներ, խեղանդամութեամբ։

CORNWALL.
Ամօ՛թ է, տէ՛ր, ամօ՛թ։

LEAR.
Ճապուկ կայծակնե՛ր, ձեր կուրացուցիչ հուրը ժայթեցէք արհամարհալից այն աչքերի մէջ. խամրեցրէք նրա գեղեցկութիւնը, ո՜վ ճահիճներից ծծուած շոգիներ, որոնց քաշել է հզօր արեւը, ընկճեցէք նրա գոռոզութիւնը։

REGAN.
Ո՜վ սուրբ աստուածներ, ինձ է՞լ այդ կերպով անիծելու էք, երբ որ բորբոքուէք։

LEAR.
Ո՛չ, Ռեգան, երբեք դու չես ստանայ իմ անէծքները։ Ո՛չ, գորովայոյզ քո բնութիւնը անձնատուր չի լինի

կարծրասրտութեան նրա աչքերը սարսափելի են իսկ քո աչքերը սիրտ են սփոփում։ Նրանք չեն այրում։ Դու չէիր կարող դժկամակ լինել իմ հաճոյքներին, կրճատել թիւը իմ շքախմբի եւ կամ ուղղել ինձ կոշտ եւ բիրտ խօսքեր, կտրել որոշուած իմ պարէնները եւ, ամէնից վերջ, քո դուռը փակել եւ ինձ դուրս թողնել։ Ոչ, դու լաւ գիտես բնութեան պարտքերը, հօր երախտիքը, քաղաքավարութեան կարգ ու կանոնը, երախտագիտութեան պարտ ու պատշաճը։ Դու չես մոռացել թագաւորութեան այն կէսը, որ քեզ պարգեւել եմ ես։

REGAN.
Շատ լաւ, ազնիւ տէր. եկէք բուն խնդրին։

LEAR.
Ո՞վ իմ ծառային կոճղեր դնել տուեց։

CORNWALL.
Ի՞նչ փողի ձայն է։

REGAN.
Գիտեմ՝ քոյրս է. նա ինձ գրել էր, որ շուտով կը գայ։

*[Oswald enters.]*

REGAN [cont.]
Տիրուհիդ եկա՞ւ։

LEAR.
Սա մի սրիկայ է, որի անտեղի գոռոզութիւնը կախ է իր տիկնոջ յեղյեղուկ շնորհից. դուրս գնա, ստրո՛ւկ, կորիր իմ աչքից։

CORNWALL.
Ի՞նչ է ուզում ասել ձեր մեծութիւնը։

LEAR.
Ո՞վ իմ ծառայիս կոճղեր դնել տուեց։ Ռեգա՛ն, յոյս ունեմ, որ դու տեղեակ չես։ Այս ո՞վ է գալիս։

*[Goneril enters.]*

LEAR [cont.]
Ո՛ դուք աստուածներ, եթէ սիրում էք ծերունիներին, եթէ ձեր բարի իշխանութիւնը հաւանի որդու հնազանդութեանը, թէ դուք էլ ծեր էք, ապա այս դատին զօրաւիգ եղէք, շանթեր իջեցրէք եւ

պաշտպանեցէք իմ իրաւունքը։ [To Goneril.] Չե՞ս ամաչում դու նայել մօրուքիս։ Օ՜, Ռեգա՛ն, ինչպէ՞ս կարող ես բռնել դու նրա ձեռքը։

GONERIL.
Ինչո՞ւ չէ, պարոն, ի՞նչ մեղք եմ գործել։ Մեղք չէ ամէն բան, Ինչ որ մեղք թուի անխոհեմութեան, կամ տխմար ծերուկն այդպէս անուանի։

LEAR.
Ո՛հ, կողքեր, շատ պինդ էք. դեռ դիմանո՞ւմ էք։ Ինչպէ՞ս պատահեց, որ իմ ծառայիս կոճղեր դնել տուիք։

CORNWALL.
Ես հրամայեցի։ Բայց նրա գործած լրբութիւնները աւելի վատին արժանի էին։

LEAR.
Դո՞ւք, դո՞ւք արեցիք։

REGAN.
Խնդրում եմ ձեզ, հայր, որ թոյլ լինելով՝ նոյնպէս երեւաք. եթէ դուք մինչեւ այս ամսի վերջը դառնաք եւ կենաք իմ քրոջ տան մէջ՝ ձեր շքախմբի կէսն արձակելով, ապա կարող էք գալ, իմ մօտ մնալ. այժմ ես տանը չեմ եւ դեռ չեմ տեսել ձեզ ընդունելու պատրաստութիւններ։

LEAR.
Դառնամ նրա մօտ՝ յիսուն մարդ արձակա՞ծ։ Ոչ, ես աւելի կը նախընտրէի ժխտել ամէն հարկ եւ պայքար մղել բուռն հողմերի թշնամութեան դէմ, լինել ընկերը գայլի եւ ոռնալ լլկիչ նօթութեան սուր ճիրաններից։ Դառնա՞մ նրա մօտ։ Վա՛հ, այն տաքարիւն Ֆրանսիայի արքան, որ առաւ անօժիտ կրտսեր աղջկաս։ Ես աւելի շուտ կ՝երթամ նրա մօտ, կ՝ընկնեմ ծնկաչոք իր գահի առջեւ եւ զինակրի պէս թօշակ կը մուրամ մի ցած, անարգ կեանք սնուցանելու։ Դառնա՞մ նրա մօտ։ Աւելի լաւ չէ՞ր՝ ինձ խորհուրդ տայիր լինել ստրուկը, բեռնակիր գրաստը այս գարշ ծառայի։

*[Points to Oswald.]*

GONERIL.
Ինչպէս կամենաք։

LEAR.
Խնդրում եմ, դուստր իմ, ինձ մի՛ խենթացնի. քեզ չեմ ձանձրացնի։ Ձաւա՛կ, մնաս բարով։ Այլեւս միմեանց մենք չենք հանդիպի, միմեանց չենք տեսնի, բայց, այսուհանդերձ, դու իմ մարմինս ես, արիւնս, դուստրս եւ կամ, մանաւանդ, մի ախտ՝ մարմնիս մէջ, որ ստիպուած եմ իմս անուանել։ Դու մի պալար ես, ժանտախտի մի խոց, մի ուռած ելունդ՝ իմ ապականուած արիւնից ելած։ Քեզ չեմ

կշտամբում. թող գայ ամօթը, երբ որ կամենայ։ Ես չեմ հրաւիրում։ Ես չեմ աղաչում, որ շանթընկէցը կայծակ տայ գլխիդ, ոչ էլ մեծ դատիչ արամազդի վրայ. խօսում եմ քեզ հետ։ Ուղղիր քեզ, երբ կարես, լաւագոյն եղիր, եթէ կամք ունես. ես կը համբերեմ։ Ես Ռեգանի մօտ կարող եմ մնալ հարիւր ասպետովս։

REGAN.
Ոչ բոլորովին, տէր իմ։ Դեռեւս չէի սպասում, որ իմ մօտ գայիք, ես չեմ հոգացել պարտ ու պատշաճը՝ ձեզ ընդունելու։ Տէր իմ, ականջ դրէք քրոջս խօսքին։ Նրանք, որ խառնում են խոհականութիւն ձեր բուռն կրքին, պէտք է զիջանեն՝ խորհելով, որ դուք ծեր էք։ Ուրեմն ... բայց քոյրս գիտէ, թէ ինչ է անում։

LEAR.
Լա՞ւ է այդպէս խօսել։

REGAN.
Համարձակւում եմ ասել, թէ այո՛։ Ի՞նչ, յիսո՞ւն ասպետ, այդ բաւական չէ՞։ Ի՞նչ կարիք ունէք դրանցից շատին, կամ հէնց այդքանին։ Թէ՛ այդ մեծ ծախքը եւ թէ՛ վտանգը ներհակ են խօսում այդքան մեծ թուի։ Ինչպէ՞ս կարող է այդքան բազմութիւն՝ երկու հրամանի տակ, մէկ տան մէջ ապրել. այդ շատ դժուար է, գրեթէ անհնար։

GONERIL.
Եւ ինչո՞ւ, տէր իմ, չէք ուզում, որ ձեզ սպասաւորեն քրոջս ծառաները եւ կամ թէ իմոնք։

REGAN.
ինչո՞ւ չէ, տէր իմ, եւ այն ժամանակ թէ մէկը ձեր դէմ զանցառու լինէր, մենք կարող էինք պատիժ տալ նրան։ Եթէ կամք ունէք իմ տունը գալու (քանի որ հիմա վտանգ եմ տեսնում), աղաչում եմ ձեզ, որ ձեզ հետ բերէք քսանհինգ հոգի։ Թէ աւելի գան, մերժում եմ տեղ տալ կամ հիւրընկալել։

LEAR.
Բայց ես ձեզ տուի, ինչ որ ունէի։

REGAN.
Եւ ժամանակն էր։

LEAR.
Ես ձեզ կարգեցի պահապաններս եւ ժառանգներս եւ ինձ պահեցի հետեւորդների փոքրաթիւ մի խումբ։ Ի՞նչ, քեզ մօտ գալիս քսանհինգ հոգո՞վ պէտք է գամ, Ռեգան, այդպէ՞ս ասացիր։

REGAN.
Եւ կրկնում եմ այդ, մէկ հատ աւելի ես չեմ ընդունի։

LEAR.
Չար էակները լաւ են երեւում, երբ աւելի չար էակներ էլ կան. ամէնից վատը չլինելն անգամ դեռ գովելի է մի որոշ չափով [To Goneril.] Ես քեզ մօտ կը գամ, դեռ քո յիսունը քսանեւհինգի կրկնապատիկն է, եւ նրա սիրուց սէրդ՝ կրկնակի։

GONERIL.
Լսեցէք, տէր իմ, ի՞նչ կարիք ունէք քսանեւհինգի, տասնի կամ հնգի, որ ձեզ հետեւեն այնպիսի տան մէջ, ուր կրկին թուով սպասաւորներ հրաման են առել ձեզ ծառայելու։

REGAN.
Ին՞չ կարիք մէկին։

LEAR.
Օ՜! ի՜նչ հարկ խօսել կարիքի մասին։ Ամէնից նուաստ մուրացկանները իրենց ծայրայեղ աղքատութեան մէջ դարձեալ բան ունեն, որ աւելորդ է։ Մի՛ք տալ բնութեան աւելի, քան այն, ինչ անհրաժեշտ է բնութեան համար. մարդու ապրուստը նոյնչափ աժան է, որչափ գազանինը. դու մի տիկին ես. թէ շուքը լինէր սոսկ տաք հագնուել, երբեք բնութիւնը պէտք չէր ունենայ այդ պերճ հագուստին, որ հագել ես դու, եւ որ հազիւ թէ քեզ տաք է պահում։ Բայց բուն կարի՞քը։ Ո՜հ, դուք աստուածներ, համբերութիւն տուէք. իմ բուն կարիքը համբերութիւնն է։ Դուք ինձ, աստուածներ, տեսնում էք այստեղ. մի խեղճ ծերունի՝ նոյնպէս լի վշտով, որչափ տարիքով, եւ երկսի մէջ էլ նոյնչափ տարաբախտ. թէ դուք էք դրդում այս աղջկանց սիրտը իրենց հօրն ընդդէմ, մի դարձնէք ինձ այնչափ անզգայ, որ ես հեզութեամբ հանդուրժեմ դրան. տոգորեցէք ինձ ազնիւ բարկութեամբ, թող արցունքները՝ կանանց զէնքերը, արատ չբերեն առնական թշերիս։ Ոչ, դուք հրէշաւոր, անարգ վհուկներ, ձեզնից այնպիսի մի վրէժ լուծեմ, որ ամբողջ աշխարհ։ Այն բաներն անեմ։ Թէ ինչ կը լինեն, չգիտեմ դեռ ես, բայց պէտք է դառնան ամբողջ աշխարհի ահ ու սարսափը։ Դուք մտածում էք՝ ես լա՞ց կը լինեմ։ Ոչ, լաց չեմ լինի։ Շատ պատճառ ունեմ ես արտասուելու, բայց թող այս սիրտը բիւր կտոր լինի, նախքան լաց լինեմ. ո՜վ իմ խեղկատակ, ես կը խենթանամ։

*[Lear, Gloucester, Kent and the Joker all exit.]*

CORNWALL.
Եկէք ներս գնանք։ Մրրիկ կը լինի։ Հեռաւոր որոտ։

REGAN.
Այս տունը փոքր է. ծերուկն իր խմբով չեն կարող հանգիստ բնակուել այստեղ։

GONERIL.
Իր յանցանքն է այդ. ինքն իրեն զրկեց հանգստութիւնից, այժմ թող տուժի իւր խենթութիւնը։

REGAN.
Ես յօժարութեամբ կ՝ընդունեմ նրան, բայց ոչ մի ծառայ։

GONERIL.
Իմ միտքս էլ այդ է։ Ո՞ւր է կոմս Գլոստերը։

CORNWALL.
Նա ընկերացաւ այն ծերուկի հետ։ Ահա գալիս է։

*[Gloucester enters.]*

GLOUCESTER.
Արքան շատ սաստիկ բարկութեան մէջ է։

CORNWALL.
Բայց ո՞ւր է գնում։

GLOUCESTER.
Հրամայեց ձի նստել։ Բայց չգիտեմ՝ ո՞ւր։

CORNWALL.
Աւելի լաւ է՝ իր կամքին թողնել, ինքն է իր տէրը։

GONERIL.
Կոմս, երբեք նրան չխնդրէք մնալ։

GLOUCESTER.
Աւա՜ղ, գիշերը վրայ է հասնում, եւ ցուրտ հողմերը սաստիկ յուզւում են։ Մղոններ հեռու այս շրջակայքում մի մացառ չկայ։

REGAN.
Ո՛հ, կոմս, կամակոր ու յամառ մարդկանց այն աղէտները, որ հրաւիրել են, պէտք է դաս լինեն։ Դուռը փակեցէք, նա ունի իր հետ յանդուգն մի խումբ, կարող են նրանք բորբոքել նրան, երբ որ ինքն էլ այնքան միտուած է եղծել իր ականջը։ Խոհեմութիւնը երկիւղ է պատուիրում։

CORNWALL.
[To Gloucester.] Դուռը փակեցէք, սոսկալի գիշեր է։ Ռեգանի խորհուրդը խոհեմ խորհուրդ է։ Փախչենք մրրիկից։

*[They exit.]*

]0[

## ACT III. SCENE I.

The blasted heath. A storm with thunder and lightning. Kent and a Knight enter, severally.

KENT.

Այդ ո՞վ է այդտեղ, բացի մրրիկից։

KNIGHT.

Մի մարդ, որի հոգին մրրիկի պէս է, սաստիկ անհանգիստ։

KENT.

Ձեզ ճանաչում եմ. թագաւորն ո՞ւր է։

KNIGHT.

Կռւում է ահեղ տարերքի ընդդէմ. հրամայում է հողմին քշել երկիրը, ձգել ծովի մէջ կամ թէ ուռցնել ոլորուն ջրերը բա՜րձր, քան ցամաքը, որ ամէն ինչ փոխուի եւ կամ կանգ առնի. փետտում է նա իր ճերմակ մազերը, որ բուռն հողմերը կոյր կատաղութեամբ բռնում են իրենց մոլեգնութեան մէջ եւ ոչնչացնում. ճգնում է մրցել փոքրիկ մարդկային իր աշխարհի մէջ ընդհարուող հողմի եւ անձրեւի հետ։ Այսպիսի գիշեր, երբ նոյնիսկ արջը ցամաք ծծերով փակւում է որջում, երբ առիւծն անգամ, գայլը սովատանջ պատսպարում են իրենց մուշտակը, նա վազվզում է առանց գլխարկի եւ հրաւիրում է ընդհանուր ջնջում։

KENT.

Բայց ո՞վ կայ իր հետ։

KNIGHT.

Իր խենթը միայն, որ ջանք է անում իր կատակներով փարատել նրա սրտահերձ վիշտը։

KENT.

Ձեզ ճանաչում եմ, պարոն, եւ վստահ այն ծանօթութեամբ, որ ունեմ արդէն, համարձակւում եմ ձեզ յանձնարարել սաստիկ կարեւոր մի ձեռնարկութիւն։ Մի պառակտում կայ Ալբանի դուքսի եւ կորնուալի մէջ, թէեւ առերես  ծածկուած է դեռ այդ մի կեղծիքի տակ. բայց նրանք ունեն սպասաւորներ (Ինչպէս ամէն ոք, որին իր աստղը մեծ դիրք է տուել եւ գահ իշխանի), որոնք Ֆրանսիայի արքայի համար հմուտ դիտողներ եւ լրտեսներ են, նրանք յայտնել են իրենց տեսածը՝ դուքսերի ոխը, գաղտնի դաւերը, անգթութիւնը, որով վարուեցին ծերուկ բարեսիրտ թագաւորի հետ։

Դեռ կայ աւելի խորարմատ մի բան, որի, ո՞վ գիտէ, նշոյլքն են սրանք։ Սակայն Ֆրանսիայից զօրք է արշաւում այս անմիաբան պետութեան երկրում եւ խոհեմութեամբ, օգուտ քաղելով մեր թուլութիւնից, արդէն մտել է մեր ամէնից լաւ նաւահանգիստը. շուտով ակնյայտ դրօշակ կը պարզի։ Լսեցէք ուրեմն, եթէ կարող էք վստահանալ ինձ, իսկոյն դէպի դոււր ուղեւորուեցէք։ Այնտեղ կը գտնէք մի անձ, որ ձեզ շատ շնորհակալ կը լինի, երբ որ ճիշտ պատմէք, թէ թագաւորը ինչ անբնական եւ խենթացուցիչ տառապանքի է ենթարկուած հիմա։ Ես մի բարետոհմ ազնուական եմ եւ գիտակցութեամբ, վստահութեամբ է, որ այս պաշտօնը ես յանձնում եմ ձեզ։

KNIGHT.
Լաւ, մենք այդ մասին դարձեալ կը խօսենք։

KENT.
Ոչ, աւելորդ է։ Իբրեւ ապացոյց, որ ես չեմ, ինչ որ իմ արտաքինս է, բացէք այդ քսակը, եւ միջինը՝ ձեզ։ Երբ Կորդելիային տեսնէք ցոյց տուէք այս օղը, եւ նա ձեզ կ՝ասի՝ ով է այն անձը, որին տակաւին դուք չէք ճանաչում։ Թո՛ւի այս մրրիկին, ես պէտք է գնամ, փնտրեմ արքային։

KNIGHT.
Տուէք ինձ ձեր ձեռքը. ուրիշ խօսք չունէ՞ք։

KENT.
Խօսք՝ շատ քիչ, բայց գործ՝ շատ առաւել կայ, քան ինչ արուած է. փնտրենք արքային, դուք այդ կողմ գնացէք. իսկ ես՝ դէպ այս կողմ. ով առաջ գտնի, թող ձայն տայ միւսին։

*[They exit in different directions.]*

][][

ACT III. SCENE II.
Another part of the heath. Storm continues. Lear and the Joker enter.

LEAR.
Փչեցէ՛ք, հողմե՛ր, եւ ձեր թշերը պայթեցրէ՛ք, փչեցէ՛ք եւ կատաղեցէ՛ք։ Եւ դուք, հեղեղնե՛ր ու փոթորիկնե՛ր, ճայթեցէ՛ք, մինչեւ ջրահեղձ անէք զանգակատներն ու հողմացոյցներ. դո՛ւք, մտքից արագ ծծմբի բոցեր, յառաջընթացներ կաղնեհերձ շանթի, եկէք, խանձեցէք սպիտակ գլուխս։ Եւ դու, որոտում՝ ամէն բան ցնցող, զա՛րկ, տափակացրու՛ երկրի հաստ գունդը, փշրի՛ր բնութեան կաղապարները, կործանի՛ր մէկեն բոլոր սերմերը, որ արտադրում են ապերախտ մարդուն։

JOKER.
Քեռի, պալատի օրհնած ջուրը մի չոր տան մէջ աւելի լաւ է, քան թէ այս անձրեւի ջուրը՝ տնից դուրս։

Տուն դարձիր, քեռի, եւ աղջիկներիցդ ողորմութիւն խնդրի։ Ահա մի գիշեր, որ ո՛չ խելօքին է խնայում եւ ո՛չ խենթին։

*[Thunder and lightning.]*

LEAR.
[Screaming to the sky.] Գոռա՜ քո բոլոր աղիքներովդ. ժայթի՛ր, հուր, ե՛կ, անձրեւ։ Անձրեւ, փոթորիկ, փայլակ եւ կայծակ դուստրներս չեն։ Ձեզ չեմ մեղադրում, ո՛վ անմեղ տարերք, անսիրութեան մէջ։ Ես ձեզ չեմ տուել թագաւորութիւն. ձեզ չեմ անուանել իմ զաւակներս. դուք հնազանդութիւն պարտական չէք ինձ. թողէք ուրեմն թափուի իմ գլխին որչափ սոսկանքներ որ ձեզ հաճոյ է. այստեղ կանգնած եմ ես, ձեր ստրուկը, խե՛ղճ, հիւա՛նդ, տկա՛ր, անարգուա՛ծ ծերուկ բայց, այսուհանդերձ, պէտք է ձեզ կոչեմ նուաստ ծառաներ, որ միացրել էք երկու չարասիրտ աղջիկների հետ՝ ձեր երկնածնունդ լեգէոնները մեր ծեր գլխի դէմ՝ այսչափ սպիտակ։ Ո՜ ո՜ սոսկալի՜։

JOKER.
Ով որ մի տուն ունի իր գլուխը ծածկելու համար, մի լաւ գլխարկ ունի։
[Sings.]
*Celui qui veut avoir une femme*
*Avant que sa tête ait une maison,*
*Perdra et tête et tout:*
*Ainsi se sont mariés beaucoup de mendiants.*
*Celui qui fait pour son orteil*
*Ce qu'il devrait faire pour son coeur,*
*Criera bientôt misère des cors aux pieds*
*Et changera son sommeil en veilles.*

*[Kent enters.]*

LEAR.
Ոչ, ես պէտք է լինեմ կատարեալ համբերութեան օրինակ։ Այլեւս ոչինչ չեմ ասի։

KENT.
Ո՞վ է այդտեղ։

JOKER.
Մի վեհափառ տէր եւ մի տափատ, այսինքն՝ մի խելօք եւ մի խենթ։

KENT.
Վա՜յ, տէր, այստե՞ղ էք։ Գիշեր սիրողներն այսպիսի գիշեր չեն սիրում երբեք։ Զայրացած երկինքն

ահաբեկել է նոյնիսկ խաւարում խլրտողներին, որոնք փակուել են իրենց որջերում։ Այն օրից, որ կամ, չեմ տեսել երբեք այսպէս սոսկալի լայնասփիւռ կայծակ. չեմ լսել այսպէս ահռելի որոտ, այսպիսի մռունչ հողմ ու անձրեւի. մարդու բնութիւնը չի կարող տոկալ այսքան սոսկանքի եւ արհաւիրքի։

LEAR.
Թող մեծ աստուածները, որոնք կախել են այս ահեղ ժխորը մեր գլխի վրայ, որոնեն իրենց թշնամիներին։ Դողա՛ դու, թշուա՛ռ, որ ունես քո մէջ անպատիժ մնացած անյայտ ոճիրներ։ Ծածկի՛ր քեզ, ո՜վ ձեռք արիւնաշաղախ, եւ դու՛, ուխտադրուժ, եւ դու՛, կեղծաւո՛ր. դրսից առաքինի՝ դու շնացող ես. եւ դու, անզգա՛մ, ջարդուփշուր եղիր, դու, որ հնարագէտ դիմակի ներքոյ դաւեր ես նիւթել մարդու կեանքի դէմ. ո՜վ դուք, ամրապէս թաքցրած մեղքեր, ճեղքեցէք միջից ձեր ծածկոյթները եւ այս սոսկալի դատախազներից ներում հայցեցէք. իսկ ես մարդ եմ՝ ոչ այնքան կեղեքիչ, որքան կեղեքուած։

KENT.
Աւա՜ղ, գլխաբա՞ց։ Վեհաշուք տէր իմ, այս մերձակայքում կայ փոքրիկ մի հիւղ. մարդասէր մի ոք ձեզ այս մրրիկից ապաստան կը տայ։ Հանգչեցէք այնտեղ, ես կ՝երթամ կրկին այն դաժան տունը, աւելի դաժան, քան իր քարերը, ուր այս րոպէիս, երբ ձեզ փնտրեցի, ինձ մուտք չտուին. բայց նորից կ՝երթամ եւ նրանց ժլատ հիւրասիրութիւնը բռնի կը ստանամ։

LEAR.
Խելքս այլայլւում է։ [To the Joker.] Եկ այստեղ, տղաս, ինչպէ՞ս ես, տղաս։ Մրսո՞ւմ ես արդեօք, ես էլ եմ մրսում։ [To Kent.] Ո՞ւր է հիւղն, ա՜յ մարդ։ Զարմանալի է կարօտութիւնը, որ փուչ բաներին մեծ յարգ է տալիս։ Տեսնենք քո հիւղը։ Դու խեղճ, թշուառ խենթ, կայ իմ սրտիս մէջ մի մաս տակաւին, որ քեզ խղճում է։

JOKER.
[Sings.]
Celui qui a un petit peu de bon sens
Doit recevoir en chantant le vent et la pluie,
Et se contenter de sa situation,
Car la pluie tombe tous les jours.

LEAR.
Ճշմարիտ է, տղաս։ [To Kent.] Դեհ, եկ, տար մեզ այդ հիւղը։

*[Lear and Kent exit.]*

JOKER.
Սքանչելի գիշեր է, որ կարող է նոյնիսկ պոռնիկ կնոջ տապը զովացնել։ [Sings.]
*Quand les prêtres auront plus de paroles que de science;*

*Quand les brasseurs gâteront leur bière avec de l'eau;*
*Quand les nobles donneront des idées à leurs tailleurs;*
*Quand les hérétiques ne seront plus brûlés, mais bien ceux qui suivent les filles;*
*Quand tous les procès seront bien jugés;*
*Qu'il n'y aura pas d'écuyers endettés,*
*Ni de chevaliers pauvres;*
*Quand les langues ne répandront plus la médisance;*
*Que les coupeurs de bourses ne chercheront plus la foule;*
*Que les usuriers compteront leur or en plein champ;*
*Que les entremetteurs et les prostituées bâtiront des églises;*
*Alors le royaume d'Albion*
*Tombera en grande confusion,*
*Alors viendra le temps, qui vivra verra,*
*Où l'usage sera de marcher sur ses pieds.*
Մեռլինը պէտք է այս մարգարէութիւնն անի, որովհետեւ ես ապրում եմ նրա ժամանակից առաջ։

*[Exits.]*

][][

## ACT III. SCENE III.

A Room in Gloucester's Castle. Gloucester and Edmund enter.

### GLOUCESTER.

Աւա՜ղ, աւա՜ղ, Էդմոնդ, ես չեմ սիրում այս հակաբնական վարմունքը։ Երբ որ ես աղջիկներից հրաման խնդրեցի իրենց հօրը ողորմելու համար, նրանք ինձնից խլեցին իմ սեփական տանս իրաւունքը եւ իրենց յաւիտենական տհաճութեան սպառնալիքով ինձ արգելեցին, որ մէկ էլ նրա մասին չխօսեմ, չբարեխօսեմ, ոչ էլ որեւիցէ կերպով նրան օգնեմ։

### EDMUND.

Խի՜ստ վայրենի ու հակաբնական է այդ։

### GLOUCESTER.

Լաւ է, բան չասես։ Դուքսերի մէջ անհամաձայնութիւն կայ, եւ որ աւելի վատն է, ես այս գիշեր մի նամակ եմ ստացել։- Վտանգաւոր է դրա մասին խօսել։ Ես նամակը փակել եմ իմ պահարանի մէջ։ Բոլոր այս անարգանքների մասին, որ թագաւորն այժմ հանդուրժում է, անպատճառ վրէժ պէտք է հանուի։ Արդէն բանակի մի մասը դուրս է բերուել ցամաք, մենք պէտք է դառնանք թագաւորի կողմը։ Ես ուզում եմ նրան փնտրել եւ գաղտնապէս օգնել նրան։ Դու գնա եւ դուքսի հետ զրոյց արա, որ նա

չնկատի իմ այս գթասրտութիւնը։ Եթէ իմ մասին հարցնի, կ՝ասես՝ հիւանդ է եւ անկողին է մտել։ Եթէ աչքովս մահս տեսնեմ, ինչպէս ինձ արդէն սպառնացել են, այնուամենայնիւ ես պէտք է օգնեմ թագաւորին՝ իմ հին տիրոջս։ Մի տարօրինակ բան է պատրաստւում, Էդմոնդ, խնդրեմ, խոհեմ եղիր։

*[Exits.]*

EDMUND.
Այդ գթութիւնը քեզ արգելուած էր. եւ իսկոյն դուքսին ես իմաց կը տամ, նաեւ լուր կը տամ նամակի մասին։ Դա վարձատրութեան արժանի գործ է, եւ ես դրանով պէտք է ձեռք բերեմ, ինչ որ իմ հայրը կորցնելու վրայ է. այսինքն՝ բոլորը։ Երիտասարդը վեր է բարձրանում, երբ ծերն ընկնում է։

*[Exits.]*

]|[

## ACT III. SCENE IV.
The part of the Heath with a Hovel in it. Storm continues. Lear, Kent and the Joker enter.

KENT.
Այստեղ է, տէր իմ, ազնիւ տէր, մտէք։ Բացօթեայ գիշերի բռնակալութիւնն այնչափ դաժան է, որ ոչ մի էակ տոկալ չի կարող։ Մրրիկը շարունակւում է։

LEAR.
Թո՛ղ ինձ։

KENT.
Բարի՛ տէր, ներս մտէք այստեղ։

LEAR.
Ուզո՞ւմ ես միթէ սիրտս պատառել։

KENT.
Աւելի կ՝ուզէի իմս պատառել։ Ներս մտէք, տէր իմ։

LEAR.
Քեզ խիստ է թւում, որ այս մրրիկը մինչ ոսկորներս ներս է թափանցում, քեզ համար խիստ է, բայց ուր մեծագոյն մի ցաւ է խրուել, փոքրագոյնն այնտեղ անզգալի է. արջից խոյս կը տաս, բայց թէ փախուստդ առաջնորդի քեզ դէպի ծովն ահեղ, ետ կը գաս կրկին դէպ արջի բերան։ Երբ հոգին հանգիստ է, մարմինը քնքուշ է, հոգուս մրրիկը խլում է ինձնից որեւէ ուրիշ զգացողութիւն, բացի

միայն այն, որ տրոփում է։ Ա՜խ, որդիական ապերախտութիւն։ Նոյնը չէ՞ր լինի, եթէ բերանս խածնէր այս ձեռքը, քանզի սա նրան սնունդ է տանում։ Բայց լա՜ւ կը պատժեմ, ո՜չ, չեմ ուզում լալ։ Այսպիսի գիշեր ինձ դուրս վռնդե՜լ։ Ցա՜ծ թափուիր, հոգ չէ ես կը հանդուրժեմ։ Այսպիսի գիշեր։ Օ՜, Ռեգա՜ն, Գոների՜լ, ձեր բարի հայրը որի վեհ սիրտը բաշխեց ամէն ինչ։ Օ՜! այդ շաւղի մէջ խելագարուել կայ, խոյս տամ դրանից. բաւ է այդ մասին։

KENT.
Ո՜վ բարի տէր իմ, ներս մտէք այստեղ։

LEAR.
Դու ներս գնա, խնդրեմ, հոգ տար քո վրայ. այս փոթորիկը ինձ արգելում է խորհել այնպիսի բաների վրայ, որոնք աւելի ինձ կը տանջէին։  Բայց հոգ չէ, մտնենք։ [To the Joker.]  Ներս մտիր, տղաս, նախ դու ներս մտիր։  Ո՜վ անտուն աղքատ, հայդէ՜, նե՜րս մտիր։ Պէտք է աղօթեմ եւ յետոյ քնեմ։

*[The Joker enters the Hovel.]*

LEAR [cont.]
Խե՜ղճ մերկ աղքատներ, ուր որ էլ լինէք, այս ժանտ մրրիկից մտրակուած, տանջուած՝ ինչպէ՞ս կարող էք ձեր անտուն գլխով եւ սովալլուկ ձեր ստամոքսով եւ պատառոտուն ցնցոտիներով պատսպարել ձեզ այսպիսի օդից։ Օ՜! ես այդ մասին շատ քիչ եմ խորհել, դե՜ղ խմիր, ճոխութիՆ, կրիր մի անգամ, ինչ որ կրում են չքաւորները, որ դու էլ թափ տաս քո աւելորդը խեղճերի համար եւ ցոյց տաս նրանց գէթ մի աւելի ողորմած երկինք։

EDGAR.
[From within.] Կանգուն եւ կէս, կանգուն եւ կէս, խեղճ Տոմ։

*[The Joker flees the Hovel in panic.]*

JOKER.
Ներս մի՜ մտնիր, քեռի, այստեղ դեւ կայ։ Օգնեցէ՜ք, օգնեցէ՜ք։

KENT.
Ձեռքդ տուր ինձ։ Ո՞վ կայ այստեղ։

JOKER.
Դեւ է, դեւ է։ Ասում է՝ անունս աղքատ Տոմ է։

KENT.
[Standing in front of the Hovel.] Ո՞վ ես արդեօք դու, որ մռմռում ես այդտեղ՝ յարդի մէջ։

*[Edgar enters dressed as a lunatic.]*

EDGAR.
Հեռո՛ւ . չար ոգին ինձ հալածում է։ Մորենու միջից ցուրտ հողմ է փչում։ Հը՜մ, գնա, մտիր սառն անկողինդ եւ տաքացրու քեզ։

LEAR.
Դու է՞լ ես տուել քո բոլոր ինչքդ երկու դուստրերիդ եւ այս օրն ընկել։

EDGAR.
Ո՞վ մի բան կը տայ աղքատ Տոմին, որին չար դեւը ման է ածում կրակի եւ բոցի, ծանծաղուտի եւ յորձանքի միջից, ճախնի եւ մորուտի վրայով։ Նա դանակներ ցցեց նրա բարձի տակ, խեղդապարաններ՝ նրա նստարանի տակ. մկնդեղ խառնեց նրա ապուրի մէջ, սիրտը հպարտացրեց, նրան ստիպեց կարմիր ձիու վրայ նստած՝ աշտանակել չորս մատ լայն կամուրջի վրայով, որպէսզի բռնի իր ստուերը, որին չար դեւը դաւաճան էր ձեւացրել։ Աստուած օրհնի քո հինգ զգայարանքդ։ Տոմը մրսում է։ ո՜հ, դուդի, դուդի, դուդի։ Տէրը քեզ փրկի թաթարներից, չար աստղերից եւ չարքերի զարկելուց։ Ողորմութիւն արէք աղքատ Տոմին, որին չար դեւը տանջում է։ Հիմայ կը բռնեմ նրան այստեղ, այնտեղ եւ այնտեղ եւ կրկին այնտեղ եւ այնտեղ։

*[The storm continues.]*

LEAR.
Դստե՞րքն են նրան այս օրը գցել։ Ոչինչ չպահեցի՞ր, բոլո՞րը տուիր։

JOKER.
Ոչ, գէթ մի ծածկոց պահեց իր համար, եթէ ոչ՝ ամէնքս կ՝ամաչէինք։

LEAR.
Այժմ թող բոլոր պատուհասները, որոնք կախուած են մեր գլխի վերեւ, որպէս օրհասներ մարդկանց մեղքերի՝ քո աղջիկներիդ գլխի վրայ տեղա՛ն։

KENT.
Նա աղջիկ չունի։

LEAR.
Մա՛հ քեզ, դաւաճան։ Ոչինչ չէր կարող եղծել բնութիւնը, հասցնել նրան այս նուաստութեան, թէ ոչ՝ ապերախտ իր աղջիկները։ Միթէ՞ կարգ է այժմ, որ վանուած հայրեր այսքան չարչարուեն իրենց մարմնի մէջ։ Արդար պատիժ է. այդ մարմինն է ծնել այն պելիկանի չար աղջիկներին։

EDGAR.
[Sings.]
*«Pillicock était sur la montagne de Pillicock. Holà! holà! hoé! hoé!»*

JOKER.
Այս ցուրտ գիշերը մեզ բոլորիս խենթ ու խելագար կը դարձնի։

EDGAR.
Զգուշացիր չար դեւից։ Հնազանդիր ծնողներիդ, խօսքդ ճիշտ պահիր։ Մի երդուիր, մի մեղանչիր ուրիշ մարդու օրինաւոր կնոջ հետ, մի զարդարիր սիրուհուդ շքեղ զարդերով։ Տոմը մրսում է։

LEAR.
Դու ո՞վ ես եղել։

EDGAR.
Մի պարոն, կանանց ծառայող, հոգով եւ սրտով գոռոզ, որ մազերս գանգուր էի անում, ձեռնոցներ էի կրում գլխարկիս մէջ, ծառայում էի սիրույուս սրտի վաւաշանքին եւ նրա հետ գործում էի խաւարի գործը։ Այնչափ երդում էի անում, որչափ բառեր էի ասում, եւ բեկանում էի նրանց՝ առ երեսս գթած երկնքի, քնում էի՝ ցոփութիւններ հնարելով, եւ զարթնում էի, որ ի գործ դնեմ, գինին շատ էի սիրում, զառերը՝ սաստիկ, իսկ կանանց հարցում ես գերազանց էի տաճկից։ Սրտով՝ կեղծ, ականջով՝ դիւրահաւան, ձեռքով՝ արիւնաշաղախ, ծուլութեան մէջ՝ խոզ, գողութեան մէջ՝ աղուէս, անյագութեան մէջ՝ գայլ, կատաղութեան մէջ՝ շուն, յափշտակութեան մէջ՝ առիւծ։ Մի թողնի, որ կօշկի ճռճռոցը կամ մետաքսի խշխշոցը խեղճ սիրտդ կնոջ գերի դարձնեն։ Ոտքդ հեռու պահիր բոզանոցներից, ձեռքդ՝ կանանց իւբկաներից, գրիչդ՝ վաշխառուի տետրերից, յետոյ խրոխտա չար դեւի դէմ։ Դարձեալ փշենու միջից ցուրտ հողմ է փչում, ասում է՝ սո՛ւմմ, մո՛ւն։ Հէ՜յ, նոննի՛, Դոլֆին, որդիս, բաց թող, թող գայ, անցնի։
Մրրիկը շարունակւում է։

LEAR.
Աւելի լաւ էր քեզ համար՝ գերեզմանի մէջ լինել, քան թէ մերկ մարմնով կանգնել երկնքի այս կատաղութեան դէմ։ Մարդը ա՞յս է միայն։ Լաւ նկատեցէք սրան. դու մետաքս պարտ չես որդին, ոչ էլ մորթի՝ գազանին, ոչ էլ բուրդ՝ ոչխարին, ոչ էլ մուշկ՝ բեշկին։ Ահա մենք երեք հոգի կանք այստեղ, մենք խարդախուած ենք. դու՛ ես իսկականը։ Անպաճոյճ մարդը ոչ այլ ինչ է, եթէ ոչ՝ մի այսպիսի խեղճ, մերկ, երկկճղակաւոր անասուն, ինչպէս դու ես։

*[Begins tearing off his clothing.]*

LEAR [cont.]
Դո՛ւրս, դո՛ւրս, պաճուճանքնե՛ր, դո՛ւրս, ցա՛ծ եկէք իմ հագից։

JOKER.
Խնդրեմ, քեռի, մի անի. շատ վատ գիշեր է մէջը լողալու համար։ Մի փոքրիկ կրակ այս ընդարձակ դաշտի մէջ՝ նման կը լինէր մի շնծեր ցոփասէրի սրտին. մի փոքրիկ կայծ, իսկ մարմնի մնացած մասը սառած։ Նայիր, ահա մի շրջմոլիկ հուր։

EDGAR.
Սա այն չար դեւ Ֆլիբբերտիջիբետն է։ Նա սկսում է փայլել հրաթաքոյցից յետոյ եւ շրջում է մինչեւ առաջին անգամ աքաղաղի կանչելը, նա է տալիս մարդու աչքի կատարակտ, շլութիւն եւ նապաստակի շուրթ։ Նա է փտեցնում սպիտակ ցորենը եւ վնասում է աշխարհի խեղճ արարածներին։ Երեք անգամ սուրբ Վիթոլդ դաշտ, սար ու ձոր թափառեց, մղձաւանջին եւ նրա
ինն ընկերին ձեռք բերեց եւ հրամայեց հեռանալ, երդուեցրեց, որ չքանայ։ Դեւ, հեռացի՛ր, չքացի՛ր։

KENT.
Ինչպէ՞ս է ձեր մեծութիւնը։

*[Gloucester enters with a torch in his hand.]*

LEAR.
Ո՞վ է այդ։

KENT.
Ո՞վ է, ի՞նչ ես փնտրում։

GLOUCESTER.
Ովքե՞ր էք այստեղ, ձեր անունները։

EDGAR.
Խե՛ղճ Տոմ, որ ուտում է լողացող գորտ, դօդօշ, գորտնուկ, պատի խլէզ, ջրի խլէզ, որ իր սրտի կատաղութեան մէջ, երբ որ չար դեւը տանջում է, կովի թրիք է ուտում աղցանի տեղ, կուլ է տալիս պառաւ մուկ եւ սատկած շուն, խմում է կանգնած ճահճի կանաչ փրփուր, որ մտրակով հալածւում է տեղից տեղ, ոտքերը դրւում են կոճղերի մէջ, որ պատժւում է եւ բանտարկւում է, որ ունեցել է երեք ձեռք զգեստ իր կռնակի համար, վեց շապիկ՝ իր մարմնի։ [Sings.]
*«Un cheval à monter et une arme à porter,*
*mais des souris, des rats et de si petits*
*cerfs ont été la nourriture de Tom pendant*
*sept longues années.»*

Չգուշացիր ինձ հալածողից։ Հանդա՛րտ կաց, Սմոլքին, հանդա՛րտ, դեւ։

GLOUCESTER.
Ինչ՞։ Ձեր մեծութիւնը սրանից լաւ ընկերներ չունէ՞։

EDGAR.
Խաւարի իշխանն ազնուական է, անունն է Մոդո եւ Մահու։

GLOUCESTER.
(Լիրին։) Տէր իմ, մեր մարմինն ու արիւնը մինչ այն աստիճան ապականուել են, որ նրանք ատում են իրենց ծնողին։

EDGAR.
Խեղճ Տոմը մրսում է։

GLOUCESTER.
Տուն եկէք ինձ հետ։ Առ ձեզ ունեցած պարտականութիւնս ինձ թոյլ չի տալիս ամէն բանի մէջ լսել ձեր աղջկանց խիստ հրամաններին։ Ինձ հրամայեցին դռներս փակել եւ այս բռնակալ գիշերին թոյլ տալ խուժել ձեզ վրայ. բայց, այնուհանդերձ, ես յանդգնեցի գալ եւ փնտրել ձեզ եւ ձեզ տուն տանել, ուր դուք կը գտնէք կրակ եւ կերակուր։

LEAR.
Թողէք, որ առաջ այս փիլիսոփայից մի բան հարցնեմ։ [To Edgar.] Ինչ՞ է որոտման պատճառը։

KENT.
Տէր իմ, ընդունեցէք դուք նրա հրաւէրը, գնացէք նրա տուն։

LEAR.
Թող մի բառ ասեմ այս թեբէացի ուսումնականին։ Ինչ՞ ուսում ունես։

EDGAR.
Արգելել դեւին, ջարդել ճճիներ։

LEAR.
Եկէք առանձին, ձեզ մի բան հարցնեմ։

KENT.
[To Gloucester.] Կրկին ստիպեցէք, որ գնայ, տէր իմ։ Խելքը խառնուում է։

GLOUCESTER.
Միթէ՞ մեղք ունի. իր աղջիկները մահն են ցանկանում։ Ա՛h, բարի՛ Քէնտը, նա ասաց, որ վերջն այսպէս կը լինի։ Խե՜ղճ աքսորուած մարդ, ասացիր՝ արքան խելագարւո՞ւմ է։ Ասեմ քեզ, բարեկամ, ես էլ մօտ խենթ եմ. մի որդի ունէի, որին իմ տոհմից այժմ արտաքսել եմ. նա այս վերջերս, հէնց այս վերջերս կեանքիս դէմ դաւեց։ Բարեկամ, նրան շատ էի սիրում. ոչ մի հայր որդուն չի սիրել այնքան. ճշմարիտն ասեմ, հէնց այդ կսկիծը ինձ գժացրել է։ Ի՞նչ գիշեր է այս։

*[Storm continues.]*

GLOUCESTER [cont.]
Պաղատում եմ ձերդ մեծութեան։

LEAR.
Ներեցէք, պարոն։- Ազնիւ փիլիսոփայ, պէտք է մնամ ձեզ հետ։

EDGAR.
Տոմը մրսում է։

GLOUCESTER.
[To Edgar.] Ներս գնա, ա՛յ մարդ, այդտեղ՝ հիւղի մէջ, տաքացիր այդտեղ։

LEAR.
Բոլորս մտնենք։

KENT.
(աԱրոցի ճանապարհը ցոյց տալով։) Այս կողմից, միլորդ։

LEAR.
Սա էլ պէտք է գայ։ Ես չեմ բաժանուի իմ փիլիսոփայից։

KENT.
[To Gloucester.] Տէր իմ, տեղի տուէք։ Թոյլ տուէք՝ իր հետ սրան էլ բերի։

GLOUCESTER.
[To Kent.] Դրան էլ բերեցէք։

KENT.
Դու էլ եկ, ա՛յ մարդ, եկ մեզ հետ, գնանք։

LEAR.
Հայդէ՛, բարեսիրտ իմ աթենացի։

GLOUCESTER.
Ոչ մի բառ, ոչ մի բառ։ Սը՜ս։

EDGAR.
[Sings.]
*«Le jeune chevalier Roland vint à la tour ténébreuse;*
*Il disait toujours, fi! foh! fum!*
*Je sens ici le sang d'un Breton.»*

*[They all exit.]*

][][

ACT III. SCENE V.
A Room in Gloucester's Castle. Cornwall and Edmund enter.

CORNWALL.
Այս ամրոցից գնալուց առաջ պէտք է վրէժս հանեմ։

EDMUND.
Բայց, միլորդ, ինձ կարող են պարսաւել, որ այսպէս որդիական պարտքը զոհում եմ հաւատարմութեան, մի բան ինձ սարսափեցնում է, երբ որ մտածում եմ դրա վրայ։

CORNWALL.
Հիմա ես տեսնում եմ, որ եղբայրդ լոկ չար հոգուց դրդուած չէր, երբ որ ուզում էր իր հօրն սպանել. հօր նենգութիւնը աւելի եւս գրգռում էր որդու պարսաւելի չարութիւնը։

EDMUND.
Որչափ անբախտ մարդ եմ ես, որ պէտք է զղջամ արդար լինելուս վրայ։ Այս է այն նամակը, որից ապացուցւում է, որ նա գիտակցօրէն Ֆրանսիայի շահերին նուիրուած մի կուսակից էր։ Ո՜հ, երկինք, երանի՜ այս դաւաճանութիւնը եղած չլինէր, կամ գէթ ես չլինէի յայտնողը։

CORNWALL.
Եկ ինձ հետ դքսուհու մօտ։

EDMUND.
Եթէ այս նամակի նիւթը ճիշտ լինի, դուք ահագին գործ ունէք կատարելու։

CORNWALL.
Ճշմարիտ, թէ սուտ, այդ քեզ շինեց Գլոստերի կոմս։ Հետազօտիր, թէ հայրդ որտեղ է, որ կարողանանք հեշտ կերպով բռնել նրան։

EDMUND.
[Aside.] Եթէ ես նրան գտնեմ թագաւորին օգնելիս, այդ աւելի կը զօրացնի նրա կասկածը։ [Aloud.] Ես կը շարունակեմ իմ հաւատարիմ ընթացքը, որչափ էլ պայքարը սաստիկ լինի պարտաճանաչութեան եւ իմ հարազատ արեան միջեւ։

CORNWALL.
Ես կատարեալ վստահութիւն կ՝ունենամ դէպի քեզ, եւ դու իմ սիրոյ մէջ կը գտնես մի աւելի սիրող հայր։

*[They exit.]*

][][

ACT III. SCENE VI.
Chamber in a Farmhouse adjoining the Castle. Gloucester, Lear, Kent, Edgar and the Joker enter.

GLOUCESTER.
Այստեղ աւելի լաւ է, քան բաց օդի մէջ. գոհութեամբ ընդունեցէք այս պատսպարանը։ Ես կ՝աշխատեմ աւելացնել, ինչ որ կարող եմ, եւ կարկատել մի հանգիստ բնակարան։ Իսկոյն կը դառնամ ձեզ մօտ։

*[Exits.]*

KENT.
Նրա մէջ իմացականութեան բոլոր ուժը տեղի է տուել յուսահատութեան առջեւ։ Աստուածները վարձատրեն ձեր բարեսրտութիւնը։

EDGAR.
Ֆրատերետտօն ինձ կանչում է եւ ասում, թէ Ներոնը գորտ է որսում դժոխքի խաւարի լճի մէջ։ Աղօթի՛ր, անմեղ, եւ զգուշացիր չար դեւից։

JOKER.
Խնդրեմ, քեռի, ասա ինձ՝ խելագարն ազնուակա՞ն է, թէ՞ ռամիկ։

LEAR.

Թագաւո՛ր է, թագաւո՛ր։

JOKER.

Ոչ, մի ռամիկ է, որ մի ազնուական որդի ունի, որովհետեւ խենթ է այն ռամիկը, որ իր որդուն իրենից առաջ ազնուական է շինում։

LEAR.

Ա՛խ, հազար հոգի լինէին նրանք, կաս-կարմիր եղած տաք շամփուրներով եւ շուացնելով գրոհ տային նրանց վրայ։

EDGAR.

Ա՛խ, այն չար դեւը մէջքս կծում է։

JOKER.

Խենթ է, ով որ հաւատ ընծայի գայլի հեզութեան, ձիու սմբակներին, պատանու սէրին կամ բոզի երդումին։

LEAR.

Դե՛հ, վճռուած է. նրանց ուղղակի դատի կը կանչեմ։ [To Edgar.] Ե՛կ, նստի՛ր այստեղ, հմուտ դատաւոր։ [To the Joker.] Իսկ դու, իմաստուն, եկ, այստեղ բազմիր։ Հիմա դու՛ք եկէք, դու՛ք, քած աղուէսներ։

EDGAR.

Տես, ինչպէս կանգնած՝ աչքեր է ոլորում։ Աչքո՞վ ես անում մարդկանց դատաստանի ժամանակ, տիկին։ [Sings.]

*Viens à moi en traversant le ruisseau, Bessy.*

JOKER.

[Sings.]

*Elle a une fente à son bateau,*

*Et ne peut pas dire*

*Pourquoi elle n'ose venir à toi.*

EDGAR.

Չար դեւն աղքատ Տոմին հալածում է սոխակի ձայնով։ Հոպդանսը Տոմի փորի մէջ ճչում է եւ երկու սպիտակ հերինգ է ուզում։ Մի կռնչա, սեւ հրեշտակ, ես քեզ համար ուտելիք չունեմ։

KENT.
[To the King.] Ինչպէ՞ս էք, տէր իմ, մի կանգնէք այսպէս ապշած, շուարած, պառկեցէք այստեղ եւ այս բարձի վրայ քիչ հանգստացէք։

LEAR.
Նախ պէտք է տեսնեմ սրանց դատաստանը։ Այժմ կանչեցէք դուք վկաներին։ [To Edgar.] Դու, արդարութեան զգեստաւոր մարդ, նստիր քո տեղդ։ [To the Joker.] Դու, արդարութեան նրա լուծընկեր, նստիր նրա մօտ։ [To Kent.] Դուք էլ անդամ էք յանձնաժողովի. դուք էլ նստեցէք։

EDGAR.
[Sings.]
*Dors-tu ou veilles-tu, gentille pastourelle?*
*Tes brebis sont dans le blé.*
*Un souffle seulement de ta petite bouche,*
*Et tes brebis sont préservées de mal.*
*Pouff! le chat est gris!*

LEAR.
Առաջ սրան կանչեցէք, սա Գոներիլն է։ Ես երդումով վկայում եմ այս յարգելի ժողովի առաջ, որ նա քացով զարկեց թագաւորին՝ իր հօրը։

JOKER.
Առաջ եկէք, տիկին, ձեր անունը Գոների՞լ է։

LEAR.
Նա չի կարող ուրանալ այդ։

JOKER.
Ներողութիւն, ես ձեզ մի նստարան կարծեցի։

LEAR.
Եւ ահա միւսը, որի չար աչքերը յայտնում են, թէ սիրտն ի՞նչ կտաւից է։ Կանգնեցէք այդտեղ, զէ՞նք, զէ՞նք, սու՛ր, կրա՛կ։ Այստե՛ղ էլ կաշառք։ Դու՛, կեղծ դատաւոր, ինչո՞ւ թոյլ տուիր, որ նա խուսափի։

EDGAR.
Օրհնուէ՛ն քո հինգ զգայարանքը։

KENT.
Ո՛հ, ցաւալի՛ է։ Ո՞ւր է, տէր արքայ, ձեր այնքան ասած համբերութիւնը, որով շատ անգամ պարծենում

էիք։

EDGAR.
[Aside.] Իմ արցունքներս այնքան կարեկից դառնում են նրան, որ վախենում եմ՝ նրանք փչացնեն դէմքիս ծպտումը։

LEAR.
Փոքրիկ շները եւ բոլոր խումբը՝ տրեյ, Բլանշ, Սիրունիկ, հաչում են վրաս։

EDGAR.
[Sings.]
*Que ta gueule soit blanche ou noire,*
*Que tes dents empoisonnent quand tu mords,*
*Mâtin, lévrier, métis hargneux,*
*Chien courant ou épagneul, braque ou limier,*
*Mauvais petit chien à la queue coupée ou la queue en trompette,*
*Tom les fera tous hurler et gémir;*
*Car lorsque je leur jette ainsi ma tête,*
*Les chiens sautent par-dessus la porte et tous se sauvent.*
Խե՜ղճ Տոմ, եղջիւրդ դատարկ։

LEAR.
Ուրեմն թող անդամահատեն Ռեգանին եւ տեսնեն, թէ ինչ կայ ծնուած սրտի մօտ։ Արդեօք մի բնական պատճառ կա՞յ, որ այս սրտերն այսպէս կարծրացնում է։ [To Edgar.] Ձե՛զ, պարոն, ես ընդունում եմ իմ հարիւրիս մէջ. միայն թէ չեմ սիրում ձեր հագուստի ձեւը։ Գուցէ դուք կ՝ասէք՝ սա Պարսկաստանի տարազ է, բայց լաւն այն է, որ փոխէք։

KENT.
Դե՛հ, ազնիւ տէր իմ, պառկեցէք այստեղ եւ մի քիչ հանգստացէք։

LEAR.
Աղմուկ մի՛ հանէք, աղմուկ մի՛ հանէք։ Քաշեցէք վարագոյրները։ Այսպէս, այսպէս, այսպէս, մենք առաւօտը կ՝ընթրենք։ Այսպէս, այսպէս, այսպէս։

JOKER.
Իսկ ես անկողին կը մտնեմ կէսօրին։

*[Gloucester returns.]*

GLOUCESTER.
Եկ այստեղ, բարեկամ, ո՞ւր է թագաւորը, իմ տէրս։

KENT.
Այստեղ է, պարոն, բայց մի անհանգստացրէք նրան, խելքը թռել է։

GLOUCESTER.
Խնդրեմ, բարեկամ, առ նրան գիրկդ։ Ծածուկ լսեցի, որ դաւ են նիւթել նրա կեանքի դէմ։ Ահա այստեղ կայ պատրաստ պատգարակ, դի՛ր նրան այնտեղ եւ տար մինչեւ Դուվր, ուր դու կը գտնես հիւրընկալութիւն եւ պաշտպանութիւն։ Վեր առ տիրոջդ ... թէ կէս ժամ ուշանաս, թէ՛ նա եւ թէ՛ դու եւ ով որ նրան պաշտպանել ուզի, փրկութիւն չունէք։ Վե՛ր առ, վե՛ր առ շուտ եւ հետեւի՛ր ինձ. ես քեզ շուտ կը տամ ամէն պիտոյքներ։

KENT.
Ընկճուած բնութիւնը թմրած քնած է։ Գուցէ այս նինջը բալասան լինի քո այդ ջախջախուած դատողութեանը. բայց թէ դէպքերը քունդ խանգարեն, բժշկութիւնը դժուար կը լինի։ [To the Joker.] Ե՛կ, օգնիր դու էլ, տիրոջդ տանենք։ Դու էլ պէտք է գաս։

GLOUCESTER.
Եկէք, եկէք գնանք։

*[Kent, Gloucester and the Joker help guide Lear off-stage.]*

EDGAR.
Երբ մենք տեսնում ենք, որ մեր մեծերը նոյն ցաւերն ունեն, է՛լ չենք մտածում, որ մեր վատերը անտանելի են։ Մտքով մանաւանդ տառապում է նա, երբ որ խորհում է բարեբախտների եւ այն շողշողուն երջանկութեան վրայ, որ նա լքանում եւ հեռանում է. բայց շատ ցաւերի յաղթում է հոգին, երբ որ իր վիշտը ընկերներ ունի։ Որչա՜փ իմ վիշտս թեթեւ է հիմա եւ հանդուրժելի, երբ այն նոյն բանը, որ ստիպում է ինձ մէջքս ծռել, ծալում է մէջքը խեղճ թագաւորի. նա թշուառ հայր է, ես՝ թշուառ որդի։ Տոմ, գնա, ուշ դիր մեծ աղմուկներին եւ այն ժամանակ յայտնուիր միայն, երբ կեղծ կարծիքը, որ իր ստութեամբ քեզ աղտեղել է, քո անմեղութեամբ քեզ վերադարձնի յարգ ու պատիւ։ Թող ինչ որ կ՝ուզէ, լինի այս գիշեր, միայն թէ արքան խոյս տալ կարենայ։ Թաքնուե՜նք, տեսնե՜նք։

*[Exits.]*

][][

ACT III. SCENE VII.
Room in Gloucester's Castle. Cornwall, Regan, Goneril, Edmund and Servants all enter.

CORNWALL.
[To Goneril.] Շտապեցէք իսկոյն ձեր ամուսնու մօտ, ցոյց տուէք նրան այս նամակը. Ֆրանսիայի բանակը ցամաքն է ելած: [To the Servants.] Փնտրեցէ՛ք այն դաւաճան Գլոստերին:

*[Servants exit.]*

REGAN.
Իսկոյն կախեցէ՛ք նրան:

GONERIL.
Աչքերը հանեցէ՛ք:

CORNWALL.
Դուք յանձնեցէ՛ք նրան իմ բարկութեան: Էդմոնդ, դուք մեր քրոջն ուղեկից եղէք: Այդ պատիժները, որ մենք պարտաւոր ենք տալ ձեր դաւաճան հօրը, յարմար չեն, որ դուք տեսնէք: Խորհուրդ տուէք դուքսին, որի մօտ էք գնում, որ ամենայն շտապով պատրաստութիւն տեսնի. մենք էլ պատրաստ ենք նոյնն անելու: Մեր սուրհանդակները պէտք է արագ լինեն եւ մեզ միմեանցից լուր հասցնեն: Գնաք բարով, սիրելի քոյր: Գնաք բարով, միլորդ Գլոստեր:

*[Oswald enters.]*

CORNWALL [cont.]
Ի՞նչ լուր, արքան ո՞ւր է:

OSWALD.
Միլորդ, Գլոստերը նրան այստեղից տանել է տուած, երեսունհինգ հոգի իր ասպետներից, ամենայն փութով փնտրելով նրան, մեր դռան առաջ նրան միացան, եւ լորդի մի քանի ծառաների հետ բոլորը միասին դէպի դոււր գնացին, ուր, պարծենում են, որ պիտի գտնեն զինուած բարեկամներ:

CORNWALL.
Ձիեր բերել տուր տիրուհուդ համար:

GONERIL.
Գնաք բարով, իմ դուքս, գնաք բարով, քոյր իմ: Գոներիլ, Էդմոնդ եւ Օսուալդ դուրս են գնում:

CORNWALL.
Էդմոնդ, գնաս բարով: Գնացէք, բերէք դաւաճան Գլոստերին: Թեւերը կապեցէք մի գողի նման եւ բերէք մեր առջեւ:

*[Several other Servants exit.]*

CORNWALL [cont.]
Թէեւ չենք կարող առանց դատաստանի դիպչել իր կեանքին, բայց թող կորանայ մեր իշխանութիւնը մեր ցասման առջեւ, որը պարսաւել կարող են մարդիկ, սակայն ոչ սանձել։

*[Several Servants enter with Gloucester.]*

REGAN.
Ապերախտ աղուէսն է։

CORNWALL.
Ամուր կապեցէք այդ չոր թեւերը։

GLOUCESTER.
Ի՞նչ են կամենում ձեր բարձրութիւնքը։ Բարի բարեկամներ, խորհեցէք գոնէ, որ դուք ինձ հիւր էք. մի՛ անպատուէք ինձ, իմ բարեկամներ։

CORNWALL.
Կապեցէ՛ք, ասում եմ։

*[Gloucester is bound to a chair.]*

REGAN.
Պինդ, պինդ կապեցէք։ Օ՛, պի՛ղծ դաւաճան։

GLOUCESTER.
Անողորմ տիկին, ես դաւաճան չեմ։

CORNWALL.
Կապեցէք նրան այս բազկաթոռին։ Սրիկա՛յ, կը տեսնես։

*[Regan plucks his beard.]*

GLOUCESTER.
Աստուածնե՛րը վկայ, անազնիւ գործ է մօրուքս փետել։

REGAN.
Այսպէս սպիտակ, եւ այսպէս մատնի՛չ։

GLOUCESTER.
Չարասիրտ տիկին, իմ այս մազերս, որ իմ կզակից փետում ես այսպէս, կը կենդանանան, կը մեղադրեն քեզ։ Ձեր հիւրընկալն եմ. այդ գողի ձեռքերով չպիտի պատռէիք հիւրասէր դէմքս։ Ինչ՞ էք կամենում։

CORNWALL.
Դե՛հ, ասա՛, ա՛յ մարդ, ին՞չ նամակներ են, որ ստացել ես վերջերս Ֆրանսիայից։

REGAN.
Ճիշտ պատասխանիր, քանզի մենք գիտենք ճշմարտութիւնը։

CORNWALL.
Եւ ի՞նչ կապ ունես մատնիչների հետ, որոնք վերջերս ցամաք են ելած այս պետութեան մէջ։

REGAN.
Որոնց մօտ արդէն ուղարկել ես դու լուսնոտ արքային։ Խօսի՛ր։

GLOUCESTER.
Մի նամակ ստացել եմ ես, եւ նրա մէջ կան կարծիքներ միայն, եւ այն՝ մի անձից, որ չէզոք մարդ է, ոչ թէ թշնամի։

CORNWALL.
Նենգութի՛ւն։

REGAN.
Եւ կեղծի՛ք։

CORNWALL.
Ո՞ւր ուղարկեցիր արքային։

GLOUCESTER.
Դոււր։

REGAN.
Ինչո՞ւ համար Դոււր, քեզ չարգելեցի՞ն ի գին։

CORNWALL.
Ինչո՞ւ համար Դոււ՞ր, առաջ այդ ասա։

GLOUCESTER.
Կապուած մի ցցի՝ պէտք է դէմ դնեմ ամբողջ ոհմակին։

REGAN.
Ինչո՞ւ համար Դուււր։

GLOUCESTER.
Ինչո՞ւ։ Վասնզի չուզեցի տեսնել, որ այդ անողորմ քո եղունգները փորեն ծերունկի խեղճուկ աչքերը։ Եւ վայրագ քոյրդ կնճի ժանիքներ մխի այն օծեալ եւ սուրբ մարմնի մէջ։ Այնպիսի՜ մրրիկ էր (Եւ նա, գլխաբաց՝ դժոխքի պէս սեւ մի գիշերուայ մէջ հանդուրժեց դրան), այնպիսի՜ մրրիկ էր. որ ծովն ուզում էր ուռչել, բարձրանալ, ջրահեղձ մարել հոյլքը աստղերի, այնինչ, խե՜ղճ ծեր սիրտ, ինքն էլ երկնքին օժանդակում էր անձրեւելու մէջ։ Եթէ գայլերը այդ ժանտ ժամանակ գային, ոռնային քո դռան առջեւ, կ՝ասէիր. «Դուռը բաց, բարի դռնապան»։ Եւ բոլոր ուրիշ անողորմները տեղի կը տային։ Բայց պէտք է տեսնեմ թեւաւոր վրէժը, երբ որ խոյանայ, գրոհ տայ ձեր նման զաւակների վրայ։

CORNWALL.
Դու այդ չես տեսնի։ Տղերք, աթոռը Ամուր բռնեցէք։ Այդ աչքերը ես պէտք է կոխ տամ։

*[Gloucester is held down while Cornwall plucks one of his eyeballs out, throws it to the floor and then stomps upon it.]*

GLOUCESTER.
Ով որ յոյս ունի ծերութեան հասնել, օգնութեա՛ն գայ ինձ։ Ո՜վ անգութ։ Աստուածնե՜ր։

REGAN.
Մէկ կողմը միւսին կը ծաղրի, միւսն էլ։

CORNWALL.
Եթէ դու տեսնես վրէժխնդրութիւնը։

FIRST SERVANT.
Կա՛նգ առէք, միլո՜րդ։ Իմ մանկութիւնից ձեզ ծառայել եմ, բայց չեմ արել ձեզ քան այս, մեծագոյն մի ծառայութիւն՝ ստիպելով ձեզ չանել այդ բանը։

REGAN.
Ին՞չ ասել է, շու՛ն։

FIRST SERVANT.
Թէ ունենայիր մօրուք կզակիդ, այնպէս ցնցէի։ Ի՞նչ ես ուզում անել։

CORNWALL.
Իմ ստրու՛կ։

[He draws his sword and attacks the Servant.]

FIRST SERVANT.
Լաւ, որ այդպէս է, եկ եւ փորձիր դու բարկութեան բախտը։

*[They fight. Cornwall is gravely injured.]*

REGAN.
[To another servant.] Տուր ինձ քո սուրը, մի գեղջուկ այսպէս յանդուգն լինի՞։

*[She snatches up a sword, comes behind the Servant and stabs him.]*

FIRST SERVANT.
Օ՛! սպանուեցի։ Միլորդ, ձեզ մնաց մի աչք, որ տեսնէք այն պատուհասը, որ իջնելու է նրա գլխին։ Օ՛!
[Dies.]

CORNWALL.
Որպէսզի չտեսնի, թո՛ղ առաջն առնենք։

*[He tears out Gloucester's other eye and throws it on the ground.]*

CORNWALL [cont.]
Դուրս, անարգ մածուած, այժմ ո՞ւր է փայլդ։

GLOUCESTER.
Խաւա՞ր բոլորը, եւ անյուսութի՛ւն։ Ա՛խ, Էդմոնդ որդիս։ Ո՛վ Էդմոնդ, վառիր բոլոր կայծերը քո բնութեան մէջ, որ վրէժը լուծես այս անգութ գործի։

REGAN.
Դու՛րս, մատնիչ սրիկայ, մէկին ես կանչում, որ քեզ ատում է. նա է մեզ յայտնել քո մատնութիւնդ։ նա խի՛ստ բարի է՝ քեզ նման մարդուն խղճալու համար։

GLOUCESTER.
Ո՛հ, իմ խենթութի՜ւն, ուրեմն Էդգարը անմեղ է եղել։ Բարի աստուածներ, ներեցէք ինձ այդ եւ տուէք նրան բարեբախտութիւն։

REGAN.
Գնացէք, նրան դուրս վռնդեցէք, թող հոտոտելով նա մինչեւ Դուվր ճանապարհի փնտրի։ Բայց ի՞նչ է, միլո՛րդ, ինչո՞ւ ձեր դէմքը այդպէս փոխւում է։

CORNWALL.
Վէրք եմ ստացել, եկ ինձ հետ, տիկին։ Դուրս վռնդեցէք կոյր սրիկային, աղբի մէջ գցեցէք այդ պիղծ ստրուկին։ Ռեգան, արիւնս շատ հորդ է հոսում, շատ անժամանակ եղաւ այս վէրքը։ Տուր ինձ բազուկդ։

*[Cornwall, led by Regan, exits. Servants unbind Gloucester and lead him out as well.]*

SECOND SERVANT.
Թող բարի լինի այս մարդու վերջը, ես չեմ վախենայ ամէն մեղք գործել։

THIRD SERVANT.
Եթէ այդ կինը երկար կեանք տեսնի եւ վերջը մեռնի ծերութեան մահով, բոլոր կանայքը հրէշներ կը դառնան։

SECOND SERVANT.
Հետեւենք կոմսին եւ գնանք փնտրենք բեդլամի խենթին, որ նրա համար ուղեցոյց լինի, ուր որ նա ուզի։ Նրա թափառիկ խելագարութիւնն ամէն բան կ՝ընդունի։

THIRD SERVANT.
Դու գնա, իսկ ես մի քիչ շոր գտնեմ եւ մի քանի հատ ձուի ճերմկուց՝ խեղճի արիւնոտ երեսի համար։ Երկինքը նրան օգնական լինի՜։

*[They exit in different directions.]*

][][

ACT IV. SCENE I.
The Heath. Edgar enters.

EDGAR.
Դարձեալ այս է լաւ, կամաւ անարգուել. քան միշտ անարգուել եւ շողոքորթուել, բախտի ամէնից ստոր, ապաշնորհ, անարգ էակն էլ դեռ մի յոյս ունի եւ դեռ ապրում է երկիւղից ազատ, թէ կայ ողբալի

մի փոփոխութիւն, երջանկագոյնի համար է միայն. ապերջանիկը վերադառնում է դէպի ցնծութիւն։ Ե՛կ բարով, ուրեմն, ո՛վ անմարմին օդ, որ ընդգրկում եմ։ Այն չքաւորը, որին փչելով դու թաւալեցիր անյուսութեան մէջ, ոչինչ պարտ չմնաց քո մրրիկներիդ։ Բայց, ո՞վ է գալիս։

*[Gloucester enters, being led by an Old Man.]*

EDGAR [cont.]
Հա՛յրս, այսքան խեղճ մի ուղեկցի հետ։ Աշխա՛րհ, աշխա՛րհ, աշխա՛րհ, թէ տարօրինակ հողդողդութիւնքդ չստիպէին մեզ գարշել քեզանից, կեանքը չէր տեղի տայ տարիքի առջեւ։

OLD MAN.
Ո՛վ իմ բարի տէրս, ես ձեր ճորտն եմ եղել եւ ձեր հօր ճորտը, այս ութսուն տարին։

GLOUCESTER.
Գնա, հեռացիր, բարի մարդ, գնա։ Քո օգնութիւնդ ինձ անօգուտ է, իսկ քեզ՝ վնասակար։

OLD MAN.
Չէք կարող տեսնել ձեր ճանապարհը։

GLOUCESTER.
Ճանապարհ չունեմ, ուրեմն աչքերի կարիք էլ չունեմ, երբ աչք ունէի, ոտքս սայթաքեց, մեզ անուշադիր դարձնում են յաճախ մեր միջոցները. մեր թերութիւնքը շատ հեշտ դառնում են մեզ աջակիցներ։ Ո՛հ, իմ սիրելի որդի Էդգարս, քո խաբուած հօրդ սրտմտութեան զոհ. թէ այնքան ապրէի, որ քեզ տեսնէի շօշափելիքով, կարող էի ասել, որ իմ աչքերը բացուել են կրկին։

OLD MAN.
Օ՛, ho՛յ, այդ ո՞վ է։

EDGAR.
[Aside.] Ո՛վ իմ աստուածներ. ո՞վ կարէ ասել. «Ես դժբախտութեան գագաթն եմ հասել»։ Աւելի, քան երբեք, դժբախտ եմ ես այժմ։

OLD MAN.
Խեղճ աղքատ Տոմն է։

EDGAR.
[Aside.] Տակաւին վատթար կարող եմ լինել։ Դժբախտութիւնը չի հասել դեռեւս իր վերջնակէտին, քանի դեռ մարդը կարող է ասել. «Այս է վատթարը»։

OLD MAN.
Ա՛յ մարդ, ո՞ւր ես գնում։

GLOUCESTER.
Դա մուրացկա՞ն է։

OLD MAN.
Մուրացկան եւ խենթ։

GLOUCESTER.
Դեռ քիչ խելք ունի, թէ ոչ՝ չէր կարող մուրացկան լինել։ Անցած գիշերուայ այն մրրիկի մէջ ես տեսայ մի մարդ այս տեսակներից եւ մտածեցի, որ մարդ մի որդ է, յետոյ իմ որդին եկաւ մտքիս մէջ, եւ սակայն միտքս դեռ այն ժամանակ ներհակ էր նրան։ Բայց այնուհետեւ շատ բան լսեցի։ Ինչպէս ճանճերը՝ մանկանց ձեռքի մէջ, այդպէս ենք եւ մենք աստուածների մօտ։ Զուարճութեան համար սպանում են մեզ։

EDGAR.
[Aside.] Ինչպէ՞ս է եղել. շատ վատ արուեստ է՝ տրտմութեան առջեւ խենթի դեր խաղալ եւ վիրաւորել թէ՛ ուրիշներին, եւ թէ՛ ինքն իրեն։ Օրհնեա՛լ լինես, տէր։

GLOUCESTER.
Սա այն մերկ մա՞րդն է։

OLD MAN.
Այո՛, տէր։

GLOUCESTER.
Ուրեմն, խնդրեմ դու գնաս։ Եթէ կարող ես, իմ սիրոյ համար, մէկ-երկու մղոն այստեղից հեռու։ Դուրի շաւղի մէջ գալ եւ մեզ հասնել՝ ի սէր քո նախկին անձնուիրութեան։ Արա այդ, խնդրեմ, եւ բեր մի ծածկոց այս մերկի համար, որին կը խնդրեմ ինձ առաջնորդել։

OLD MAN.
Աւա՛ղ, տէր, նա խենթ է։

GLOUCESTER.
Ժամանակների պատուհասն է այդ, այժմ կոյրերին առաջնորդում են խելագարները, իմ ասածս արա։ Եւ կամ, մանաւանդ, արա, ինչ կամքդ է, միայն հեռացիր։

OLD MAN.
Պէտք է նրա համար իմ ամենալաւ հագուստս բերեմ, ինչ կ՝ուզէ, թող լինի։

*[Exits.]*

GLOUCESTER.
Ինձ նայիր, մերկ մարդ։

EDGAR.
Խեղճ Տոմը մրսում է։ [Aside.] Սրանից աւելի չեմ կարող կեղծել։

GLOUCESTER.
Եկ այստեղ, ա՛յ մարդ։

EDGAR.
[Aside.] Եւ սակայն պէտք է։ [To Gloucester.] Օրհնուած լինեն քո քաղցր աչքերը. արիւն է հոսում։

GLOUCESTER.
Ճանաչո՞ւմ ես Դոււրի ճանապարհը։

EDGAR.
Այո՛, պատով եւ դռնով, ձիու ճանապարհ եւ ոտքի ճանապարհ։ Աղքատ Տոմը վախից գժուել է։ Աստուած փրկի քեզ չար սատանայից, բարի մարդու որդի։ Հինգ դեւ մէկ անգամից մտել են խեղճ Տոմի մէջ՝ անառակութեան դեւը՝ Օբիդիկուտ, Հոբբիդիդանս՝ համրութեան իշխանը, Մահու՝ գողութեանը, Մոդոյ՝ մարդասպանութեանը, եւ Ֆլիբբերտիջիբետ՝ ծամածռութեան դեւը, որ հիմա իշխում է աղախինների եւ սպասուհիների վրայ . ուրեմն, օրհնեալ լինես, տէրս։

GLOUCESTER.
Առ այս քսակը, դու՛, որին երկնի պատուհասները ընկճել են այսքան, ամէն հարուածի ենթակայ արել, իմ թշուառութիւնը բախտ է քեզ համար։ Աստուածնե՛ր, դուք միշտ այսպէս գործեցէք. թողէք՝ հեշտասուն, յղփացած մարդը, որ ձեր պատուիրանն արհամարհում է, որ աչք է խփում, քանզի չի զգում, թողէք՝ զգայ նա ձեր զօրութիւնը, թողէք՝ բաժանումն այսպէս վերջ դնի չափազանցութեան, եւ ամէն մի մարդ ունենայ այնքան, որքան պէտք ունի։ Ճանաչո՞ւմ ես Դոււրը։

EDGAR.
Ճանաչում եմ, տէր։

GLOUCESTER.
Մի ժայռ կայ այնտեղ, որի բարձրաբերձ եւ թեքուած գլուխը ահով նայում է՝ փակուած ծովի մէջ։ Դու

միայն տար ինձ ճիշտ նրա եզրը. ես կը բարուքեմ թշուառ վիճակդ թանկագին բանով, որ ունեմ ինձ մօտ։ Այնտեղ որ հասնեմ, էլ առաջնորդի կարիք չունեմ ես։

EDGAR.
Տուր ինձ քո թեւը։ Չքաւոր Տոմը կ՝առաջնորդի ձեզ։

*[They exit.]*

][][

ACT IV. SCENE II.
Before the Duke of Albany's Palace. Goneril, Edmund and Oswald enter.

GONERIL.
Բարեւ ձեզ, միլորդ։ Ես զարմանում եմ, որ իմ հեզ այրս չեկաւ ընդառաջ։ Մտնում է Օսուալդը։ Լաւ, ո՞ւր է տէրդ։

OSWALD.
Տանն է, տիրուհի, բայց երբեք մի մարդ չի փոխուի այնքան։ Ես նրան խօսեցի ցամաք դուրս եկած բանակի մասին, նա ժպտաց միայն։ Նրան ասացի, որ դուք գալիս էք, ասաց.«Աւելի վատ»։ Երբ որ խօսեցի գլոստերի արած մատնութեան վրայ եւ նրա որդու հաւատարմութեան, ինձ տխմար կանչեց եւ յետոյ ասաց, որ ես աստառը երես եմ շինել։ Այն, ինչ որ պէտք է վատ թուար նրան, դուր է գալիս այժմ, ինչ պէտք է դուր գար, այժմ անախորժ է։

GONERIL.
[To Edmund.] Ուրեմն էլ մի գաք։ Նրա տմարդի սարսափանքն է այդ, որ չի յանդգնում մի բան ձեռնարկել։ Նա անզգայ է անարգանքների, երբ հարկաւոր է հատուցում անել։ Այն բաղձանքները, որ յայտնում էինք ճանապարհի վրայ, գուցէ կատարուեն։ Ետ դարձէք, Էդմոնդ, իմ եղբորս մօտ։ Փութացրէք նրա զօրաժողովը. առաջնորդեցէք նրա գնդերը։ Պէտք է ամուսինս ինձ տայ զէնքերը, իսկ ես իլիկը նրան պէտք է տամ։ [Granting a favor.] Այս հաւատարիմ ծառան կը լինի միջնորդ մեզ համար, եւ շատ չի անցնի, որ դու կը լսես սիրուհիուդ կամքը, եթէ բաւական յանդուգն լինես։ Քո օգտի համար։ [They kiss. Edmund slides his hand between Goneril's legs.] Առ, կրիր դու այս, մի խօսիր ոչինչ, ցած բեր գլուխդ։ Թէ այս համբոյրը լեզու ունենար, ոգուդ թռիչք կը տար մինչեւ եթերքը։ Հասկացիր եւ գնա. բարի յաջողում։

EDMUND.
Ես քոնն եմ մահվան բանակում:

GONERIL.
Ո՛հ, իմ սիրելիս։ Էդմոնդ գնում է։ Որչափ տարբեր է մի մարդ մի մարդուց։ Քեզ է վայելում մի կնոջ սէրը, իսկ իմ տխմարը յափշտակում է մարմինս։

OSWALD.
Տիկի՛Ն, դուքսը գալիս է։

*[As Oswald exits the Duke enters.]*

GONERIL.
Գոնէ սուլիչի ես արժանի էի։

ALBANY.
Աւա՛ղ, Գոներիլ, դու արժանի չես նոյնիսկ այն փոշուն, որ բուռն հողմը փչում է դէմքիդ։ Ես սարսափում եմ քո խորհուրդներից։ Այն բնութիւնը, որ անարգում է իր ծագումն անգամ, չի կարող զսպուել ոչ մի պատուարով։ Մի ոստ, որ ինքնին զատւում է բնից եւ իրեն զրկում մայրական հիւթից, կը խամրի, անշուշտ, եւ կը գործածուի մահացու պէտքի։

GONERIL.
Բաւ է, խե՛նթ խօսքեր։

ALBANY.
Իմաստութիւնը եւ բարութիւնը անարգների մօտ անարգ են թւում. եւ գարշութիւնը իր համար միայն անոյշ համ ունի։ ինչե՛ր արեցիք. վագրե՛ր, ո՛չ դուստրեր, ինչե՛ր գործեցիք։ Մի հա՛յր, մի բարի եւ խեղճ ծերունի՝ այնքան վեհաշուք, որի ոտքերը շղթայած արջն իսկ կ՝ուզենար լիզել, դուք, բարբարոսներ, այլասերուածներ, խենթացրի՛ք նրան։ Ինչպէ՞ս թոյլ տուեց բարի եղբայրս,
որ այդպէս անէք։ Մի մարդ, մի իշխան, որին նա այնքա՛ն բարիքներ արաւ։ Եթէ երկինքը չուղարկի փութով իր տեսանելի պաշտօնեաներին՝ այս պիղծ մեղքերը պատժելու համար, կը գայ ժամանակ, երբ մարդիկ միմեանց կը սկսեն ուտել օւկիանոսի հրէշների նման։

GONERIL.
Կաթնալեարդ դու մարդ, որ թշեր ունես ապտակի համար, եւ գլուխ՝ անարգանքի, որ չունես մի աչք՝ պատիւն ամօթից զանազանելու. որ չես իմանում, թէ տխմարները միայն խղճում են այն չարերի վրայ. որոնք պատժւում են, նախքան կարենան չարիքը գործել։ Ո՞ւր է թմբուկդ։ Ֆրանսիան պարզել է իր դրօշակները մեր լուռ երկրի մէջ, եւ սպանիչդ՝ մի ցցունազարդ սաղաւարտ գլխին, քեզ սպառնում է։ իսկ դու, խելագար, նստել ես հանգիստ, փիլիսոփայում եւ աղաղակում. «Աւա՛ղ, ինչո՞ւ է նա այսպէս անում»։

ALBANY.
Նայիր քեզ, դեւ դու։ Անձեւութիւնը այնչափ սոսկալի չէ մի դեւի մէջ, որչափ կնոջ մէջ։

GONERIL.
Ո՜հ, անմիտ տխմար։

ALBANY.
Ո՜վ այլասերուած ինքնածածկ էակ, ամօ՜թ, մի՜ այդպէս հրէշի դէմք առնի։ Թէ պատշաճ լինէր, որ այս ձեռներս հպատակուէին վառուած արիւնիս, նրանք պատրաստ էին միսդ յօշոտել եւ ոսկորներդ լուծել միմեանցից։ Սակայն որչափ էլ դու մի դեւ լինես, կանացի դէմքը ասպարում է քեզ։

GONERIL.
Պա՜հ, ես իմ հոգիս, տղամա՜րդ դարձար։

*[Messenger enters.]*

ALBANY.
Ին՞չ լուր։

MESSENGER.
Ո՜հ, տէր իմ, մեռաւ Կորնուալի դուքսը։ Նա սպանուեցաւ ծառայի ձեռքով, երբ պատրաստւում էր հանել Գլոստերի նաեւ միւս աչքը։

ALBANY.
Գլոստերի աչքե՞րը։

MESSENGER.
Մի ծառայ, որին նա մեծացրել էր, ի գութ շարժուելով՝ վճռեց թոյլ չտալ եւ սուրը քաշեց հզօր տիրոջ դէմ, որ կատաղելով յարձակուեց վրան, եւ միւսների հետ նրան սպանեց, բայց ինքն էլ առաւ մահացու մի վէրք, եւ հէնց այդ վէրքից նա յետոյ մեռաւ։

ALBANY.
Սա ցոյց է տալիս, որ դուք կաք վերեւ, արդարադատներ, եւ այսպէս շուտով գիտէք վրէժ լուծել մեր ոճիրներից։ Բայց, ո՜հ, խե՜ղճ Գլոստեր, միւս աչքն է՞լ կորցրեց։

MESSENGER.
Այո՜, երկուսն էլ։ Տիկին, այս գիրը ձեր քրոջիցն է, եւ պահանջում է արագ պատասխան։

GONERIL.
[Aside.] Մէկ կողմից՝ լաւ եղաւ, բայց քոյրս այրի է. եւ իմ Գլոստերս, իր մօտ լինելով, մտքիս կառուցած բոլոր շինուածքը կարող է փլչել եւ իր տակ թաղել ատելի կեանքս։ Մի ուրիշ կողմից՝ լուրն այնչափ վատ չէ։ Կը կարդամ, յետոյ կը պատասխանեմ։

*[She exits.]*

ALBANY.
Ո՞ւր էր իր որդին, երբ հանում էին նրա աչքերը։

MESSENGER.
Նա եկաւ այստեղ միլէդիի հետ։

ALBANY.
Այստեղ չէ։

MESSENGER.
Ոչ, տէր իմ։ Ես տեսայ նրան, որ ետ էր դառնում։

ALBANY.
Արդեօք նա գիտէ՞ այդ անարգ գործը։

MESSENGER.
Այո՛, ազնիւ տէր, նա ինքն էր իր հօր ամբաստանիչը. եւ ինքը դիտմամբ տնից հեռացաւ, որ պատիժն ազատ ընթացք ստանայ։

ALBANY.
Գլոստեր, ես դեռ կամ, որ վարձատրեմ քեզ այն սիրոյ մասին, որ ցոյց ես տուել դէպի թագաւորը, եւ վրէժ լուծեմ աչքերիդ համար։ Եկ այստեղ, բարեկամ. պատմիր ինձ դարձեալ՝ ուրիշ ի՞նչ գիտես։

*[They exit.]*

]{}[

ACT IV. SCENE III.
The French camp near Dover. Kent and a Knight enter.

KENT.
Ինչո՞ւ Ֆրանսիայի արքան այսպէս յանկարծ ետ դարձաւ, գիտե՞ս պատճառը։

KNIGHT.
Պետական մի գործ կիսատ էր թողել. որ մտաբերեց իր գալուց յետոյ։ Այդ այնքան ծանր է պետութեան համար եւ վտանգաւոր, որ պէտք զգացուեց նրա անձնական ներկայութեանը։

KENT.
Ո՞ւմ թողեց իր տեղ որպէս զօրագլուխ։

KNIGHT.
Ֆրանսիայի մարաջախտ պարոն Լը Ֆեռին։

KENT.
Արդեօք ձեր նամակից թագուհին որեւէ վիշտ ցոյց չտուե՞ց։

KNIGHT.
Ինչպէ՞ս չէ, տէր իմ. առաւ նամակը, կարդաց իմ առջեւ, երբեմն-երբեմն մի խոշոր արցունք
ցած էր գլորւում իր քնքուշ թշից։ Նա թագուհի էր իր վշտի վրայ, իսկ նրա վիշտը՝ իբրեւ ապստամբ, ճգնում էր նրա վրայ թագաւոր լինել։

KENT.
Յուզուեցա՞ւ ուրեմն։

KNIGHT.
Ոչ մինչեւ զայրոյթ. Համբերութիւնը եւ տրտմութիւնը պայքարում էին, թէ որն է կարող տալ նրա դէմքին աւելի չքնաղ արտայայտութիւն. տեսե՞լ էք միասին արեւ եւ անձրեւ. նրա ժպիտներն ու արցունքները էին մայիսեան սիրուն օրուայ պէս, եւ գեղածիծաղ իր ժպիտները, որոնք իր հասուն շրթունքի վրայ խաղ էին անում, անտեղեակ էին, թէ աչքերի մէջ ի՞նչ հյուրեր կային, որոնք այնտեղից ցած էին հոսում մարգարտանման, որոնք կաթում են ադամանդներից։ Մէկ խօսքով՝ վիշտը խիստ չնաշխարհիկ մի բան կը լինէր, եթէ ամէնքին այնչափ վայելէր։

KENT.
Նա բերանացի ոչինչ չհարցրե՞ց։

KNIGHT.
Մէկ-երկու անգամ կրծքից դուրս հանեց «Հայրիկ» անունը, այնպէս սրտատրոփ, կարծես այդ բառը սիրտը գալարեց։ Յետոյ նա գոչեց. *«Քոյրե՛ր, ա՜խ, քոյրե՛ր, կանանց նախատինք։ Քոյրեր։ ՔԷՆտ։ Հայրի՛կ։ Ին՞չ, փոթորկի մէ՞ջ։ Գիշեր ժամանա՞կ։ Էլ մի հաւատաք, որ գութ կայ երկրում։»* Ապա երկնային իր այն աչքերից թափեց սուրբ ջուրը, նրանով ցօղեց իր հեծեծանքը, յետոյ հեռացաւ, որ մենակ մնա իր տրտմութեան հետ։

KENT.
Աստղերն են, աստղերն այն բարձունքների, որ գերիշխում են մեր վիճակի վրայ. թէ ոչ, նոյն հայրը, միեւնոյն մայրը անկարող էին ծնունդ տալ այսքան տարբեր զարմերի։ Դուք չխօսեցի՞ք այլեւս նրա հետ։

KNIGHT.
Ոչ։

KENT.
Թագաւորը դեռ չէ՞ր գնացել։

KNIGHT.
Ոչ, չէր գնացել. յետոյ նա մեկնեց։

KENT.
Լաւ, պարոն։ Լիրը՝ այն խեղճ թշուառը, այս քաղաքումն է։ Երբեմն, երբ ուշքը վերադառնում է, յիշում է, թէ ինչու եկել ենք այստեղ, եւ ոչ մի կերպով նա չի զիջանում տեսնել իր աղջկան։

KNIGHT.
Ինչո՞ւ, ազնիւ տէր։

KENT.
Մի սաստիկ ամօթ տանջում է նրան. այն խստութիւնը, որով նա զրկեց իր խեղճ աղջկան իր օրհնութիւնից եւ յանձնեց նրան նժդեհ աստղերին՝ նրա սրբազան իրաւունքները տալով շնասիրտ իր աղջիկներին։ Դրանք այնպիսի ժահրոտ խայթեր են իր հոգու համար, որ բուռն ամօթից չի համարձակւում տեսնել իր աղջկան։

KNIGHT.
Աւա՜ղ, խեղճ արքայ։

KENT.
Ոչինչ չէ՞ք լսել դուքս ալբանիի եւ կորնուալի զօրքերի մասին։

KNIGHT.
Ճանապարհին են։

KENT.
Ես ձեզ կը տանեմ մեր տէր Լիրի մօտ եւ կը թողնեմ ձեզ՝ հոգ տանել նրան։ Մի զօրեղ պատճառ

ստիպում է ինձ դեռ քիչ էլ մնալ այս ծպտումի մէջ։ Երբ որ ճանաչուեմ, դուք չէք ափսոսայ, որ ինձ հետ այսպէս ծանօթ էք եղել։ Խնդրեմ գաք ինձ հետ։

*[They exit.]*

][][

## ACT IV. SCENE IV.

The French camp. A Tent. Cordelia, a Physician and Soldiers enter with drum and colors.

### CORDELIA.

Աւա՜ղ, նա ինքն է։ Ճիշտ մի քիչ առաջ նրան տեսել են այնպէս մոլեգին, ինչպէս կատաղի բազմայոյզ մի ծով՝ բարձրաձայն երգելիս, ճակատը պսակած վայրի անծխոտով, գիժ վարսակներով, կռատուկներով, մոլախինդներով, եղինջով, որոմով, կկուի ծաղկով եւ ամէն տեսակ անպէտք խոտերով, որոնք սնուցիչ ընդեղէնի մէջ բուսնում են, աճում։ Ուղարկիր մի գունդ. թող լաւ խուզարկեն բարձր խոտերի ամէն անդաչափ եւ բերեն նրան մեր աչքի առջեւ։

[An Officer exits.]

### CORDELIA [cont.]

Արդեօք մարդկային իմաստութիւնը ին՞չ կ՝արէ անել՝ ետ տալու համար նրանից խլուած դատողութիւնը։ Ով որ նրան բուժի, թող ինձնից առնի բոլոր արտաքին հարստութիւնքս։

### PHYSICIAN.

Ճար կայ, տիրուհի. բնութեան ստնտուն քունն է, եւ դրան նա խիստ կարօտ է։ Եւ այդ նրա մէջ գրգռելու համար այնպիսի ազդու բոյսեր, խոտեր կան, որոնք մինչեւ իսկ տրտմութեան աչքը կարող են փակել։

### CORDELIA.

Ո՜վ սուրբ գաղտնիքներ, ո՜վ երկրի բոլոր գաղտնի զօրութիւնք. դուրս արձակուեցէք արցունքներիս հետ, օգնական եղէք եւ բժշկարար այն բարի մարդու անբախտութեանը։ Գնացէք, փնտրեցէք, փնտրեցէք նրան, միգուցէ նրա անզուսպ զայրոյթը ջախջախի այն կեանքը, որ չունի այլեւս ոչ մի առաջնորդ։

*[Messenger enters.]*

### MESSENGER.

Նոր լուր, տիրուհի, բրիտանեան զօրքը առաջանում է։

CORDELIA.
Այդ վաղուց գիտենք եւ պատրաստ ենք մենք նրանց ընդունելու։ Ո՜հ, սիրելի հայր, քեզ համար միայն եկել եմ այստեղ, ահա մեծ Ֆրանսիան գթաց իմ սուգիս եւ թախանձական իմ արցունքներիս։ Փառքի գրգիռը չէ, որ զէնք է տուել, այլ սէրը միայն, սէրը կաթոգին, եւ մեր ծերուկ հօր, իրաւունքները։ Ա՜խ, նրա մասին մի լուր առնէի, տեսնէի նրան։

*[They exit.]*

]{}[

ACT IV. SCENE V.
Room in Gloucester's Castle. Regan and Oswald enter.

REGAN.
Եղբօրս զօրքը ճանապարհի ընկա՞ւ։

OSWALD.
Այո՛, տիրուհի։

REGAN.
Եւ ինքն է՞լ անձամբ։

OSWALD.
Այո՛, տիրուհի, մեծ դժուարութեամբ։ Ձեր քոյրն աւելի քաջ զինուոր է։

REGAN.
Արդեօք լորդ Էդմոնդը չխօսե՞ց տանը ձեր տիրուհու հետ։

OSWALD.
Ոչ, իմ տիրուհի։

REGAN.
Ինչ՞ պէտք է լինի քրոջս նամակը, որ գրել է նրան։

OSWALD.
Չգիտեմ, տիկին։

REGAN.
Անշուշտ, կարեւոր մի պատճառ ունէր, որ այնքան արագ մեկնեց այստեղից։ Գլոստերի աչքերը

հանելուց յետոյ անխոհեմ բան էր նրան ողջ թողնել։ Ուր որ հասնում է, բոլոր սրտերը յուզում է մեր դէմ։ Էդմոնդը, կարծեմ, գթալով նրա անբախտութեան վրայ, գնաց, որ վերջ տայ նրա մութ կեանքին, միեւնոյն ժամանակ իրազեկ դառնայ թշնամու ուժին։

OSWALD.
Ես էլ պէտք է գնամ նրա ետեւից, որ նամակը տամ։

REGAN.
Վաղը մեր զօրքը ճանապարհ կ՝ընկնի։ Սպասիր մեզ մօտ, ճանապարհները վտանգաւոր են։

OSWALD.
Չեմ կարող, տիկին, տիրուհիս սաստիկ շտապեցրեց ինձ։

REGAN.
Արդեօք Էդմոնդին ի՞նչ ունի գրելու. դու չէի՞ր կարող նրա պատգամը լեզուով հաղորդել։ Թերեւս, մի բան։ Չգիտեմ ինչ բան։ Քեզ շատ կը սիրեմ, եթէ ինձ թոյլ տաս բանալ այս գիրը։

OSWALD.
Տիկին, աւելի կը յօժարուէի։

REGAN.
Գիտեմ, տիկինդ մարդուն չի սիրում։ Ես այդ լաւ գիտեմ, եւ վերջին անգամ որ նա այստեղ էր, նա արձակում էր սիրոյ ակնարկներ, խօսուն հայեացքներ ազնիւ Էդմոնդին։ Գիտեմ, նրա հետ դու մտերիմ ես։

OSWALD.
Ե՞ս, իմ տիրուհի։

REGAN.
Ինքս լաւ գիտեմ, թէ ինչ եմ ասում։ Դու մտերիմն ես, ես այդ լաւ գիտեմ։ Ուրեմն լսիր այս խորհուրդն ինձնից, մարդս մեռել է. Էդմոնդը եւ ես խօսք ենք տուել միմեանց. նա շատ աւելի ինձ կը յարմարի, քան քո տիրուհուդ։ Իսկ մնացածը ինքդ հասկացիր. երբ նրան գտնես, խնդրեմ այս նրան տաս։ Տալիս է մի մատանի։ Եւ երբ տիրուհիդ պատմես այս բանը, խնդրեմ ասես նրան. *«Խելքդ ժողովիր։»* Ուրեմն, գնաս բարով։ Եթէ պատահմամբ դու մի բան լսես կոյր մատնիչի մասին, իմացած կացիր, որ նրա կեանքին ով որ վերջ դնի, մի շնորհ կը ստանայ։

OSWALD.
Ես շատ կ՝ուզէի նրան հանդիպել եւ ցոյց կը տայի՝ ում կուսակիցն եմ։

REGAN.
Դե՛հ, երթաս բարով։

*[They exit.]*

]{}[

ACT IV. SCENE VI.
Country near Dover. Gloucester enters, with Edgar dressed like a peasant.

GLOUCESTER.
Ե՞րբ պիտի հասնենք այս բլրի ծայրին։

EDGAR.
Դուք այս րոպէիս վեր էք բարձրանում. չէ՞ք տեսնում միթէ՝ ինչպէս յոգնում ենք։

GLOUCESTER.
Բայց գետինն այստեղ ինձ հարթ է թւում։

EDGAR.
Սոսկալի սեպ է։ Յո՛ւշ, ծովի ձայնը չէ՞ք լսում միթէ։

GLOUCESTER.
Ոչ, իրաւն ասած։

EDGAR.
Ուրեմն ձեր միւս զգայարանքը տկարացել են ձեր աչքի ցաւից։

GLOUCESTER.
Գուցէ։ Բայց կարծես ձայնդ փոխուած է, եւ դու խօսում ես լաւագոյն ոճով եւ առաջուանից աւելի խելօք։

EDGAR.
Դուք սխալւում էք։ Ես ոչնչի մէջ փոխուած չեմ, այլ լոկ իմ հագուստի մէջ։

GLOUCESTER.
Ոչ, ինձ թւում է, որ դու խօսում ես առաջուանից լաւ։

EDGAR.
Մօտ եկէք, պարոն։ Ահա այն տեղը։ Հանդարտ կանգնեցէք։ Ի՜նչ ահռելի է։ Եւ մարդուս գլուխը ինչպէ՜ս դառնում է, երբ ցած է նայում մի այսչափ խորունկ անդունդի վրայ։ Սեւ ագռաւները եւ որիները, որոնք ճախրում են կէս ճանապարհին, հազիւ թւում են բզէզների չափ։ Խորութեան կէսին մի մարդ, կախ ընկած, ծովային սամիթ քաղում է ժայռից. սոսկալի՜ արհեստ։ Նա ինքն իր գլխից մեծ չի երեւում։ Այդ ձկնորսները, որոնք քայլում են ծովեզերքի վրայ, հազիւ մկների մեծութիւն ունեն. եւ այն մեծ նաւը, որ խարսխած է, հազիւ թւում է իր մակոյկի չափ, եւ իր մակոյկը՝ խարսխափայտի՝ մեր աչքի համար չափազանց փոքրիկ։ Մռնչուն կոհակը, որ կատաղում է անհամար չնչին խճերի վրայ, չի լսւում այս բարձրից։ Էլ ես չեմ նայի։ Միգուցէ գլուխս սկսի դառնալ, եւ նուաղած աչքս ինձ վայր գլորի դէպի անդունդը։

GLOUCESTER.
Կանգնեցրու դու ինձ, ուր այժմ կանգնած ես։

EDGAR.
Լաւ, առաջ եկէք, տուէք ձեր ձեռքը։ Դուք այժմ միայն մի քայլ հեռու էք անդունդի ափից. եթէ ինձ տային ամէն ինչ, որ կայ լուսնեակի ներքեւ, ես չէի ուզի ուղիղ վեր ցատկել։

GLOUCESTER.
Բաց թող իմ ձեռքը, ահա, բարեկամ, քեզ մի այլ քսակ՝ մէջը մի գոհար, որ արժէք ունի խեղճ մարդու համար։ Թող փէրիները եւ աստուածները քեզ այդ ընծայով բախտաւոր անեն, գնա, հեռացիր, մնաս բարով ասա եւ մեկնելդ ինձ լսելի արա։

EDGAR.
Մնացէ՛ք բարով, յարգելի պարոն։

GLOUCESTER.
Ձեզնից ի սրտէ շնորհակալ եմ։

EDGAR.
[Aside.] Եթէ ես նրա անյուսութեան հետ այսպէս խաղում եմ, նրա համար է, որ բուժեմ ես այն։

GLOUCESTER.
[Starts to exit.] Ահե՜ղ աստուածներ, ես այս աշխարհին հրաժեշտ եմ տալիս եւ ձեր աչքի դէմ, անվրդով հոգով, ցնցում եմ ինձնից իմ մեծ կսկիծս, թէ ինձ հնար լինէր տանել տակաւին եւ չմաքառել, պայքար չմղել անդիմադրելի ձեր մեծ կամքի դէմ, ես թոյլ կը տայի՝ կեանքիս պատրոյգը եւ զազիր մասը ինքն իրեն մարէր։ Եթէ Էդգարը դեռ կենդանի է, օրհնեցէք նրան։ Այժմ, ընկեր, մնաս բարով։

*[Gloucester flings himself off the cliff and falls ... three feet to land face first in the dirt.]*

EDGAR.
[After a pause.] Գնացի, տէր, մնաք բարով։ [Aside.] Սակայն չգիտեմ, երեւակայութիւնն արդեօք չի՞ կարող հէնց ինքը կեանքի գանձը գողանալ, երբ որ կեանքն ինքնին օժանդակում է այդ գողութեանը։ Թէ այնտեղ լինէր, ուր որ խորհում էր, խորհելը արդէն անցած կը լինէր։ Ող՞ջ էք, թէ՞ մեռած։ Հէ՜յ, պարո՛ն։ Բարեկա՛մ։ Լսո՞ւմ էք, պարոն։ Խօսեցէ՛ք, պարոն։ Կարող է լինել, որ, իրօք, այսպէս նա մեռած լինի բայց ոչ, նա հիմա ուշքի է գալիս։ Ո՞վ էք դուք, պարոն։

GLOUCESTER.
Գնա, թող մեռնեմ։

EDGAR.
Թէ չլինէիր մի սարդի ոստայն, մի փետուր կամ օդ, այս բարձրութիւնից գահավիժելով՝ մի ձուի նման կը ջախջախուէիր։ Բայց դու շնչում ես. կարծր է քո նիւթը։ Արիւն չի գալիս, խօսում ես, ողջ ես։ Եթէ տասը կայմ ծայր ծայրի դնեն, չեն կարող հասնել այս բարձրութեանը, որից ընկել ես ուղղաձիգ կերպով։ Հրաշք է ապրելդ, խօսիր դու կրկին։

GLOUCESTER.
Ընկե՞լ եմ, թէ՞ ոչ։

EDGAR.
Այն կաւճուտ խարակի ահեղ գագաթից գահավիժել ես։ Մէկ վերեւ նայիր, սրաձայն արտոյտն այսքան հեռուից տեսանելի չէ, ոչ էլ իր ձայնը կարող է լսուել։ Մէկ վերեւ նայիր։

GLOUCESTER.
Աւա՜ղ, աչք չունեմ։ Արդեօք զրկուա՞ծ է դժբախտութիւնը այն իսկ բարիքից, որ գոնէ մահով ինքն իրեն վերջ տայ։ Գէթ սփոփանք է որ թշուառ մարդը կարենայ պատրել ժանտ բռնաւորի կատաղութիւնը, եւ դերեւ հանել նրա գոռոզ կամքը։

EDGAR.
Տուր ինձ բազուկդ։ Վեր կաց։ Հա՜, այդպէս։ Ինչպէ՞ս ես արդեօք, ոտքերդ պի՞նդ են։ Ահա կանգնեցիր։

GLOUCESTER.
Ա՜խ, չափազանց լաւ։

EDGAR.
Հրաշք է կատարեալ։ ժայռի կատարին ին՞չ էակ էր այն, որ քեզնից զատուեց։

GLOUCESTER.
Մի խեղճ մուրացկան։

EDGAR.
Ինձ այս ներքեւից այնպէս երեւաց, որ իր աչքերը երկու լրացած լուսիններ էին. հազար քիթ ունէր, եւ եղջիւրները խորդուբորդ էին եւ կոհակածուփ՝ յուզուած ծովի պէս։ Մի սատանայ էր։ Ուրեմն հաւատա, դու բախտաւոր հայր, որ աստուածները, որոնց փառքն է այն, որ մարդկանց համար անհնար գործեր ի կատար ածեն, քեզ պահպանել են։

GLOUCESTER.
Ես այժմ յիշում եմ։ Էլ այսուհետեւ ես կը հանդուրժեմ ամենայն վշտի, մինչեւ որ նա ինքն ինձ աղաղակի՝ բաւ է, բաւ, մեռիր։ այդ արարածին, որ դու պատմում ես, ես մարդ կարծեցի, նա միշտ կրկնում էր. *«Դեւը, չար դեւը։»* Նա ինքը այնտեղ առաջնորդեց ինձ։

EDGAR.
Թող հոգիդ ազատ, համբերող լինի։ Բայց ո՞վ է գալիս։

*[Lear enters, dressed strangely, decorated with wildflowers.]*

EDGAR [cont.]
Առողջ ուղեղը երբեք իր տիրոջն այսպէս չի պճնի։

LEAR.
Ինձ դիպչել չեն կարող, թէ ինչ է՝ դրամ եմ զարկել։ Ես արքան ինքն եմ։

EDGAR.
Օ՜! սրտաճմլի՜կ տեսարան։

LEAR.
Այդ բանի մէջ բնութիւնը արհեստից բարձր է։ Ահա քեզ քո գլխադրամը։ Այն մարդը իր աղեղն այնպէս է շարժում, որ կարծես մի խրտուիլակ լինի. մի նետ արձակիր ասուի շինողի գազի չափ։ Տես, տես մի մուկ։ Սու՜ս, սուս։ Այս մի կտոր տապակած պանիրը նրա բանը կը շինի։ Ահա իմ բազպանը։ Ես այդ կը նետեմ մի հսկայի։ Բերեցէք գեղարդները։ Օ՜, լաւ թռար, թռչուն։ Ճիշտ կէտին, ճիշտ կէտին։ [To Edgar.] Հի՜ւ։ անցաբառն ասա։

EDGAR.
Անոյշ մարիորամ։

LEAR.

Անցի՛ր։

GLOUCESTER.

Ես այդ ձայնը ճանաչում եմ։

LEAR.

Հա՛։ Գոների՛լը սպիտակ մօրուքո՞վ։ Նրանք ինձ շոյում էին մի շան պէս եւ ասում էին, թէ ես սպիտակ մազեր ունէի մօրուքիս մէջ, նախքան թէ սեւ մազեր լինէին այնտեղ։ «Այո» կամ «ոչ» ասել իմ ամէն ասածիս։ Այոն եւ ոչը լաւ աստուածաբանութիւն չէր։ Հէնց որ անձրեւն եկաւ, ինձ թրջեց եւ հողմը ինձ դողդողացրեց. երբ որոտը չլռեց իմ հրամանով, ա՛յն ժամանակ ես տեսայ, ա՛յն ժամանակ ես հոտ առայ, թէ նրանք ինչ էին։ Գնա բանից, նրանք իրենց խօսքը պահող չեն, ինձ ասում էին, թէ ես ամէն բան էի։ Այդ սուտ է. ես ջերմին անգամ դիմացողը չեմ։

GLOUCESTER.

Ես լաւ եմ յիշում այս ձայնի շեշտը։ Թագաւորը չէ՞։

LEAR.

Այո՛, թագաւոր՝ գլխից մինչեւ ոտք։ Երբ աչքս հառում եմ, տես, ինչպէ՛ս դողում են հպատակներս։ Ես շնորհում եմ այդ մարդու կեանքը։ Ի՞նչ մեղք է գործել. անառակութիւ՞ն. չպէտք է մեռնես։ Անառակութեան համար մեռնե՞լ. ո՛չ. ցախսարեկն անգամ նոյն բանն է անում, նոյնպէս եւ փոքրիկ, ոսկեգոյն ճանճը իմ աչքիս առաջ վաւաշանում է։ Թող տռփութիւնը աճի, բազմանայ, քանզի Գլոստերի ապօրէն որդին աւելի սիրով վարուեց իր հօր հետ, քան օրինաւոր մահճի մէջ սերած իմ աղջիկները։ Ի գործ, ցոփութի՛ւն. հայդէ՛, խառնիխուռն։ Քանզի ինձ համար զինուորներ են պէտք։ Տեսէք այն տիկնոջ. ի՛նչ անմեղ ժպիտ. նրա երեսը կարծել է տալիս, որ նա ձիւն ունի իր ազդրերի մէջ, որ կոտրատուելով սուրբ է ձեւանում եւ որ հեշտութեան անունիցն անգամ թեքում է գլուխը. ո՛չ կզաքիսը, ո՛չ կանաչ խոտով գիրցած նժոյգը գրոհ չեն տալիս աւելի անսանձ մի ախորժակով։ Նրանք, մէջքից ցած, կենտաւրոսներ են եւ կին՝ մէջքից վեր. մինչեւ գօտին միայն աստուածներինն է, ներքեւ՝ բոլորը չար դեւերինը։ Այնտեղ կայ դժոխք, այնտեղ կայ խաւար։ Այնտեղ կայ ծծմբային անդունդ, այրել, խարշել, գարշահոտութիւն, սպառում։ Թու՛հ, թու՛հ, թու՛հ, փա՛հ, փա՛հ։ Մի ունկի մուշկ տուր, բարի դեղավաճառ, իմ երեւակայութիւնն անուշահոտ դարձնելու համար։ Ահա քեզ դրամ։

GLOUCESTER.

Օ՛! թող համբուրեմ այդ ձեռքը։

LEAR.

Առաջ թող մէկ սրբեմ. մահացութեան հոտ է գալիս նրանից։

GLOUCESTER.
Ո՜վ դու աւերուած ձեռակերտ բնութեան, այս մեծ աշխարհն էլ այսպէս կը մաշուի, կ՝ոչնչանայ։ Ճանաչո՞ւմ ես ինձ։

LEAR.
Ես լաւ յիշում եմ այդ աչքերդ։ Ինձ ծո՞ւռ ես նայում։ Ո՛չ, արա, ինչ որ կարող ես, կոյր Կուպիդոն. ես չեմ սիրելու։ Կարդայ դու այս մենամարտի հրաւէրը, միայն լաւ ուշ դիր ոճին։

GLOUCESTER.
Եթէ բոլոր քո տառերը մէկ-մէկ արեգակներ լինէին, դարձեալ ես ոչ մէկը չէի կարող տեսնել։

EDGAR.
[Aside.] Եթէ ինձ այս բանը պատմէին, ես չէի հաւատայ, բայց այժմ, այդպէս է սիրտս ջախջախւում է։

LEAR.
Կարդա՛յ։

GLOUCESTER.
Ինչպէ՞ս, աչքիս պարունակներո՞վ։

LEAR.
Oho՜. ա՞յդ ես ուզում ասել։ Ոչ ա՞չք՝ գլխիդ մէջ, եւ ոչ էլ դրա՞մ՝ գրպանումդ։ Քո աչքերը շատ ծանր վիճակի մէջ են, իսկ քսակդ՝ շատ թեթեւ։ Բայց դարձեալ դու տեսնում ես, թէ ինչպէս են գնում աշխարհիս գործերը։

GLOUCESTER.
Ես այդ տեսնում եմ՝ զգալով միայն։

LEAR.
Ի՞նչ է, յիմարացե՞լ ես։ Մարդ կարող է առանց աչքերի էլ տեսնել, թէ աշխարհի գործերն ինչպէս են գնում։ Ականջներովդ նայիր, տես՝ ինչպէս այն դատաւորը բարբառում է այն պարզամիտ գողի վրայ։ Լսի՛ր, ականջիդ ասեմ. փոփոխիր նրանց տեղերը, եւ ձեռնախփուկ. յետոյ ասա, թէ ո՛րն է դատաւորը, ո՛րն է գողը։ Դու տեսե՞լ ես՝ ինչպէս ագարակատիրոջ շունը հաչում է մուրացկանի վրայ։

GLOUCESTER.
Այո՛, տէր։

LEAR.
Եւ ինչպէս խեղճ մարդը փախչում է շնից. լաւ, այդտեղ դու տեսել եմ իշխանութեան մեծ պատկերը,

շունն՝ իբրեւ պաշտօնեայ, իշխում է միւսի վրայ։ Սրիկա՛յ ոստիկան, քաշիր դէպի քեզ արիւնոտ ձեռքդ։ Ինչո՞ւ ես զարկում այդ պոռնիկ կնոջ։ Քո մէջքդ ծեծիր։ Դու ախտաբորբոք ցանկութիւն ունես գործել նրա հետ միեւնոյն գործը, որի պատճառով ծաղկում ես նրան։ Վաշխառուն գողին կախել է տալիս։ Ցնցոտու միջից փոքրիկ յանցանքներ շուտ են երեւում, բայց պերճ զգեստներն ու մուշտակները վարագուրում են։ Զրահիր մեղքը ոսկէ պատեանով, եւ արդարութեան ամուր նիզակը առանց վնասելու կը ջարդուի իսկոյն. պատիր այդ մեղքը ցնցոտիներով, թզուկի յարդն էլ կը խոցի նրան։ Ոչ ոք մեղք չունի, ոչ ոք, ասում եմ։ Նրանց բոլորին ես արձակում եմ։ Լսի՛ր, բարեկամ, այս բանն ինձանից, որ կարողութիւն ունեմ փակելու զրպարտչի լեզուն։ Գտիր քեզ համար ապակեայ աչքեր եւ իբր անուանարկ մի քաղաքագէտ՝ ձեւացրու տեսնել այնպիսի բաներ, որ բնաւ չես տեսնում։ Հայդէ՜, հայդէ՜, հայդէ՜։ Քաշի՛ր կօշիկս, պի՛նդ. պի՛նդ, հա, այդպէս։

EDGAR.
[Aside.] Օ՜ խառնուրդ մտքի եւ անմտութեան. խե՜լք՝ խենթութեան մէջ։

LEAR.
Թէ ուզում ես լալ վիճակիս վրայ, առ իմ աչքերս։ Ես բաւական լաւ ճանաչում եմ քեզ. անունդ է Գլոստեր. պէտք է համբերես։ Մենք արտասուելով եկել ենք աշխարհ։ Առաջին անգամ, երբ օդ ենք շնչում, գիտես, լալիս ենք եւ աղաղակում։ Լսիր, քեզ համար մի քարոզ ասեմ։

GLOUCESTER.
Աւա՜ղ, վա՜յ օրիս։

LEAR.
Երբ որ ծնւում ենք, աղաղակում ենք, թէ մենք եկել ենք խեւլագարների այս մեծ բեմի վրայ։ Սա լաւ գլխարկ է։ Լաւ հնարք կը լինէր հեծելազօրի գնդի ձիանքը թաղիքով պայտել։ Պէտք է փորձեմ այդ։ Յետոյ կը խուժեմ փեսաներիս վրայ, եւ այդ ժամանակ՝ ջա՛րդ, ջա՛րդ, ջա՛րդ, ջա՛րդ, ջա՛րդ։

*[An Officer enters with Servants.]*

OFFICER.
Օ՜ նա այստեղ է։ Բռնեցէք նրան։ Ամենասիրելի ձեր դուստրը, տէր իմ։

LEAR.
Ինձ օգնող չկա՞յ։ Ի՞նչ, գերի՞ եմ ես։ Ուրեմն բախտի խեղկատակն եմ միշտ։ Լաւ վարուիր ինձ հետ, փրկանք կը ստանաս։ Դուք վիրաբոյժներ բերէք ինձ համար։ Ես ուղեղիցս վիրաւորուած եմ։

OFFICER.
Ամէն բան կը տան ձեզ։

LEAR.
Ոչ ոք չի՞ օգնում։ Մէն-մենա՞կ եմ ես։ Վա՜հ, սա կարող է ստիպել մարդուս, ով որ աղ ունի, աչքերը այգու ցնցուղ դարձնել եւ աշնան փոշին գետին նստեցնել։

OFFICER.
Ազնիւ տէր։

LEAR.
Ես պէտք է քաջաբար մեռնեմ որպէս զարդարուած, պճնուած փեսայ։ Դեհ, ուրախ լինե՜մ։ Վա՜հ, հայդէ՜, հայդէ՜։ Ես թագաւոր եմ, տեա՜րք, գիտէ՞ք դուք այդ։

OFFICER.
Դուք մի արքայ էք, եւ մենք ձեզ՝ հնազանդ։

LEAR.
Դեռ կեանք կայ ուրեմն այդ արքայի մէջ։ Հայդէ՜, թէ բռնէք, վազելով միայն կարող էք բռնել։ Սա՜, սա՜, սա՜, սա՜, սա՜։

*[Lear suddenly runs off-stage, followed closely by the Servants.]*

OFFICER.
Ա՜խ, այս գթաշարժ մի տեսարան է ամէնից անարգ մի թշուառի մէջ, իսկ արքայի մէջ՝ անպատմելի՜ է։ Դու մի դուստր ունես, որ ազատում է մարդկային ցեղը ընդհանուր նզովքից, որ միւս երկուսը բերին նրա գլխին։

EDGAR.
Բարեւ, ազնիւ տէր։

OFFICER.
Տէր ընդ ձեզ, պարոն. ինչ՞ էք կամենում։

EDGAR.
Պարոն, լսե՞լ էք, թէ այս մօտերս կռիւ է լինելու։

OFFICER.
Պարզ է եւ յայտնի։ Ով ականջ ունի, լսել է լուրը։

EDGAR.
Ասացէք, խնդրեմ, որչա՞փ հեռու է այն միւս բանակը։

OFFICER.
Մօտ է եւ փութով առաջ է գալիս. մի ժամից միւս ժամ բուն զօրակոյտը կ՝երեւայ աչքի։

EDGAR.
Շնորհակալ եմ, տէր։ Այ՞ս էր բոլորը։

OFFICER.
Թէեւ թագուհին յատուկ պատճառով մնացել է այստեղ, բայց նրա զօրքը շարժուել է առաջ։

EDGAR.
Շնորհակալ եմ, տէր։

*[The Officer exits.]*

GLOUCESTER.
Գթած աստուածներ, դուք առէք շունչս. մի թոյլ տաք կրկին, որ իմ չար ոգին դրդէ ինձ մեռնել, նախքան ձեր կամքն է։

EDGAR.
Լաւ աղօթք է այդ, հայրիկ։

GLOUCESTER.
Բարի մարդ։ Հիմա ասա ինձ. արդեօք ո՞վ ես դու։

EDGAR.
Մի շատ թշուառ մարդ՝ բախտի սլաքներին լաւ ընտելացած, որ թէ՛ վաղօրեայ, թէ՛ այժմ զգացած իր կսկիծներով դարձել է այլոց ցաւին կարեկից։ Տուէք ձեր ձեռքը, եւ ձեզ կը տանեմ դէպ մի օթեւան։

GLOUCESTER.
Ես ձեզ ի սրտէ շնորհակալ եմ. երկնային շնորհը եւ օրհնութիւնը թող վարձատրեն ձեզ։

*[Oswald enters.]*

OSWALD.
Խոստացուած ընծա՛ն։ Ի՜նչ երջանկութիւն։ Այդ անաչք գլուխդ առաջին օրից հէնց ստեղծուած է միայն իմ բախտիս բարձրացման համար։ Ո՛վ դու ծերունի, անբախտ դաւաճան, խորհիր անյապաղ, ինչ խորհելու ես. քաշուած է ահա քեզ ջնջող սուրը։

GLOUCESTER.
Զարկիր, մաղթում եմ բարերար ձեռքիդ հարկ եղած ուժը։

*[Edgar stands between the two men.]*

OSWALD.
Յանդուգն գեղջուկ, դու խիզախում ես ախոյեան կանգնել յայտնի մեղապարտ մի դաւաճանի։ Հեռու՛, միգուցէ քեզ էլ վարակի նրա ժանտախտը։ Թո՛ղ նրա թեւը։

EDGAR.
Ես բաց չեմ թողնի, մինչեւ որ մի մարդավարի պատճառ չասես։

OSWALD.
Բաց թող դրան, թշուառական, եթէ ոչ՝ կը սատկեցնեմ քեզ։

EDGAR.
Է՛յ, աղայ, ճամփեդ բռնի գնա, թող խեղճ մարդիկ իրենց բանին կենան։ Թէ որ էդ մեծ-մեծ բրդելով մարդ կարողանար ինձ սպանել, տասնհինգ օր առաջ ինձ սպանած կը լինէին։ Տես, էս խեղճ հալեւորի մազին չդիպչես։ Հեռու կաց. արեւս գիտենայ, թէ մօտեցել ես, ես քեզ շանց կը տամ, թէ որն է պինդը՝ քո գագա՞թդ, թէ՞ իմ կոպալս։ Քեզ պարզն եմ ասում։

OSWALD.
Կորի՛ր, կովի թրիք։

EDGAR.
Հիմա ես քու ատամներդ փշրեմ, մինչեւ որ իմանաս։ Դեհ, եկ մեյդան. ես էդ քո թրից վախեցողը չեմ։
Կռւում են։ Էդգարը նրան գլորում է գետին։

*[They fight, and Edgar knocks Oswald down.]*

OSWALD.
Ա՜յ, թշուառական, ինձ սպանեցիր։ Փո՛ւչ, առ քսակս։ Եթէ ուզում ես քո բախտդ շինել, թաղիր մարմինս, եւ այն նամակը, որ գտնես իմ մօտ, յանձնիր Էդմոնդին, Գլոստերի կոմսին։ Անգլիո բանակում կը գտնես սրան։ Օ՜! տարաժամ մահ։ [Dies.]

EDGAR.
Քեզ լաւ գիտեմ ես։ Հաճոյակատար մի սրիկայ ես դու՝ տիկնոջդ ախտերին այնչափ անձնուէր, որքան կը ցանկար չարութիւնն ինքը։

GLOUCESTER.
Ինչ՞, մեռա՞ւ միթէ։

EDGAR.
Դու նստիր, հայր իմ, եւ հանգստացիր։ Գրպանները տեսնենք. այն նամակները, որ նա ասում է, գուցէ ինձ համար օգտակար լինեն։ Այո՛, մեռել է, միայն տխուր եմ, որ նա չունեցաւ մի ուրիշ դահիճ։ Թող տեսնենք։ Թոյլ տուր, բարի կնքամոմ, եւ դու, խղճմտանք, մի կշտամբիր ինձ։ Թշնամիների մտադրութիւնքը գիտնալու համար մենք նրանց սիրտը կը պատառէինք. նամակը բանալ օրինական է։ [Read the letter.] *«Յիշիր մեր փոխադարձ ուխտերը։ Դու շատ առիթներ ունես նրա կեանքին վերջ դնելու։ Եթէ կամքդ չթերանայ, առիթը եւ տեղը արդիւնաւոր կերպով կը ներկայանան քեզ։ Ոչինչ արած չենք լինի, եթէ նա յաջող վերադառնայ, այն ժամանակ ես նրա գերին եմ, եւ նրա անկողինը՝ իմ բանտս։ Ազատիր ինձ այդ մահճի զզուելի ջերմութիւնից եւ բռնիր նրա տեղը՝ ի վարձ քո աշխատութեան։ Քո անձնուէր աղախինդ, որի տենչն է լինել քո կինդ։ Գոներիլ։»* Ո՛վ անտակ անդունդ կանացի կամքի։ Ազնիւ ամուսնի կեանքին դա՞ւ նիւթել եւ փոխարէնը եղբօ՞րս դնել։ Այստեղ խորեմ քեզ, այս աւազի մէջ, մարդասպան շնութեան դու լպիրշ միջնորդ. եւ յարմար օրին այս անարգ թուղթը պէտք է երեւայ այն դուքսի աչքին, որի կեանքի դէմ թակարդ ես լարել։ Բախտաւոր է նա, որ ես կարող եմ հաղորդել նրան թէ՛ քո պաշտօնդ եւ թէ՛ քո մահդ։ Էդգար դուրս է գնում՝ տանելով դիակը։

GLOUCESTER.
Մեր թագաւորը խելագարուել է։ Որչա՛փ յամառ է իմ անարգ խելքը, որ դեռ կանգուն եմ եւ գիտակցօրէն դեռ ես զգում եմ անհուն վշտերս։ Երանի՜ ես էլ խելագարուէի. մտածմունքներս գէթ կ՝անջատուէին իմ կսկիծներից։ Մարդուս ցաւերը երեւակայութեան մոլորութեան մէջ կորցնում են իրենց գիտակցութիւնը։ Կրկին մտնում է Էդգար։

EDGAR.
Տուէք ինձ ձեր ձեռքը։ [Distant drumming is heard.] Ինձ երեւում է, որ մի թմբկի ձայն գալիս է հեռուից։ Եկէք, հայր, ձեզ յանձնեմ մի բարեկամի։

*[They exit together.]*

][][

ACT IV. SCENE VII.
Tent in the French Camp. Lear sleeps upon a bed. Physician, Knights and others attending mill about. Cordelia and Kent enter.

CORDELIA.
Ո՛վ դու ազնիւ Քէնտ, ես որքա՞ն ապրեմ եւ ի՞նչ բան գործեմ, որ հատուցանեմ քո բարութիւնդ։ Կեանքս կարճ կը լինի, եւ ամէն միջոց՝ ինձ անբաւարար։

KENT.
Երբ հասկացուած է մարդուս արածը, նա արդէն լրիւ վարձատրուած է։ Տիկին, իմ բոլոր հաղորդածները համաձայն են զուտ ճշմարտութեան հետ. ո՛չ հաւելում կայ եւ ո՛չ կրճատում։ Այլ ճիշտ իսկ եւ իսկ։

CORDELIA.
Աւելի յարմար մի զգեստ հագիր. այդ հագուստները յիշատակներ են վատթար օրերի։ Դուրս գցիր, խնդրեմ։

KENT.
Ներեցէք խնդրեմ, բարի տիրուհի. այսպէս վաղ յայտնել իմ ո՛վ լինելս կարող է վնասել ծրագիրներիս. ես կը համարեմ մի շնորհ դէպի ինձ, որ դուք տակաւին ինձ չճանաչէք մինչ այն օր, որ ես եւ ժամանակը յարմար դատենք այդ։

CORDELIA.
Թող այդպէս լինի, իմ սիրելի լորդ։ [To the Doctor.] Ինչպէ՞ս է արքան։

PHYSICIAN.
Տիկին, դեռ քնած է։

CORDELIA.
Բարի՛ աստուածներ, դուք բժշկեցէք այն մեծ խրամատը նրա խոշտանգուած, եղծուած բնութեան մէջ։ Օ՛! կարգի դրէք այս սխալածայն եւ աններդաշնակ գաղափարները այս մանկացած հօր։

PHYSICIAN.
Արդեօք հաճո՞յ է ձերդ մեծութեան, որ թագաւորին զարթնեցնենք քնից. շատ երկար քնից։

CORDELIA.
Դուք հնազանդեցէք ձեր գիտութեանը եւ գործեցէք այն, ինչ որ ձեր կամքն է։ Հագնուա՞ծ է նա։ Լիրին ներս են բերում՝ մի աթոռի մէջ։

KNIGHT.
Այո, տիրուհի. երբ խոր քնած էր, մենք նոր զգեստներ հագցրինք նրան։

PHYSICIAN.
Նրա մօտ եղէք, ազնիւ տիրուհի, երբ կը զարթնեցնենք, վստահ եմ, որ նա հանդարտ կը լինի։

CORDELIA.
Շատ լաւ։

PHYSICIAN.
Մօտ եկէք, խնդրեմ։ Երաժշտութիւնն աւելի՛ բարձր։

CORDELIA.
Ո՛վ հայր սիրելի։ Ո՛վ բժշկութիւն, կախիր քո դեղը իմ շրթունքներից. թող այս համբոյրը բալասան դառնայ այն խոր խոցերին, որ երկու քոյրերս քեզ պատճառեցին քո վեհութեան մէջ։

KENT.
Ո՛վ դու բարեսիրտ, անգին թագուհի։

CORDELIA.
Եթէ հայր անգամ չլինէիր դու, այս ճերմակ հերքդ պէտք է շարժէին նրանց սրտի գութը։ Այնպիսի դէմք է այս, որ մարդ ենթարկի անզուսպ հողմերին, սոսկալի շանթով զինուած որոտին արագ, խաչաձեւ այն փայլակների զարհուրեցուցիչ, ճապուկ կրակի մէջ, որ պահակ կանգնի (խե՛ղճ կորած զինուոր) Այսպիսի բարակ մի սաղաւարտո՞վ։ Ցոյց է տալիս իր հօր սպիտակ մազերը։ Թշնամուս շունը, թէեւ խածնէր ինձ, այսպիսի գիշեր մի տեղ կը գտնէր իմ կրակիս առջեւ, եւ դու, խե՛ղճ հայրիկ, ստիպուած էիր օթեւան գտնել խոզերի, անտուն սրիկաների հետ՝ զազիր յարդի վրայ։ Աւա՛ղ, մի հրաշք է, որ մէկ անգամով կեանքդ եւ խելքդ վախճան չգտան։ Ահա զարթնում է, խօսեցէք նրա հետ։

PHYSICIAN.
Տիկին, դու՛ք խօսեցէք, աւելի լաւ է։

CORDELIA.
Արդեօք ինչպէ՞ս է վեհափառ տէրս։ Ինչպէ՞ս է զգում ձեր մեծութիւնը։

LEAR.
Դուք վատ էք անում, որ գերեզմանից ինձ դուրս էք քաշում։ [To Cordelia.] Դու մի հոգի ես՝ երանութեան մէջ, իսկ ես կապուած եմ մի կրակէ անուի, եւ իմ սեփական արտասուքներս ինձ խարշատում են հալած արճճի պէս։

CORDELIA.
Ճանաչո՞ւմ էք ինձ, տէր իմ։

LEAR.
Ես գիտեմ, դու մի ոգի ես։ Ե՞րբ վախճանուեցիր։

CORDELIA.
Դեռ շատ հեռու է։

PHYSICIAN.
Դեռ նոր է զարթել, թողնենք՝ մի վայրկեան առանձին մնայ։ Հեռանում են անկողնից։

LEAR.
Ես որտե՞ղ էի։ Հիմա որտե՞ղ եմ։ Օ՜ գեղեցի՜կ լոյս։ Սաստիկ խաբուած եմ։ Ես կը մեռնէի կարեկցութիւնից, թէ մի ուրիշին այսպէս տեսնէի։ Չգիտեմ, ի՞նչ անեմ։ Չեմ կարող երդուել, թէ այս ձեռքերը իմ ձեռքերս են։ Տեսնենք։ Այս գնդասեղի ծակելն զգում եմ։ Երնե՜կ վիճակիս վստահ լինէի։

CORDELIA.
Օ՜ նայի՛ր ինձ, տէ՛ր, եւ դիր իմ գլխիս օրհնութեան ձեռքդ։ Լիրը ծունկ է չոքում Կորդելիայի առաջ, Կորդելիան արգելում է նրան։ Ո՛չ, տէր, մի չոքիր։

LEAR.
Ա՛խ, մի ծաղրիր ինձ։ Ես մի շատ յիմար եւ խեղճ ծերուկ եմ։ Ութսուն տարեկան կամ է՛լ աւելի. ոչ մի ժամ աւել եւ ոչ էլ պակաս։ Եւ, ճիշտն ասելով, ես վախենում եմ, որ իմ ուղեղը խանգարուած լինի։ Ինձ երեւում է, որ ծանօթ էք ինձ, նոյնպէս այս մարդը, բայց կասկածում եմ. քանզի չգիտեմ, թէ այս որտեղ է. եւ ամբողջ ուշքս չի կարող յիշել այս զգեստները. ոչ էլ գիտեմ ես, թէ երեկ գիշեր որտեղ քնեցի։ Մի ծաղրիր դու ինձ, որչափ որ ճիշտ է, թէ ես մի մարդ եմ. նոյնչափ վստահ եմ, որ այս տիկինը իմ Կորդելիան է։

CORDELIA.
Այո՛, հէնց ես եմ։

LEAR.
Արտասուքներդ թրջո՞ւմ են արդեօք։ Այո՛, ճշմարիտ։ Խնդրում եմ, մի՛ լար։ Եթէ ինձ համար թոյն ունես պատրաստ, տուր ինձ, որ խմեմ։ Ես իմանում եմ, դու ինձ չես սիրում, քանզի քոյրերդ, որչափ յիշում եմ, ինձ շատ տանջեցին։ Դու պատճառ ունես, նրանք չունէին։

CORDELIA.
Ես պատճառ չունեմ, ոչ, ամենեւին։

LEAR.
Ֆրանսիայո՞ւմն եմ ես։

KENT.
Դուք ձեր սեփական պետութեան մէջ էք։

LEAR.
Մի՛ խաբէք դուք ինձ։

PHYSICIAN.
Միամիտ եղէք, բարի տիրուհի։ Այն մեծ տագնապը, ինչպէս տեսնում էք, բժշկուած է այժմ, բայց, այսուհանդերձ, վտանգաւոր է յիշեցնել նրան անցած օրերը։ Խնդրեցէք՝ ներս գնա, մի վրդովէք նրան, մինչեւ լաւ կազդուրուի։

CORDELIA.
Ձեր մեծութիւնը արդեօք կամք չունի՞ մի քիչ քայլելու։

LEAR.
Պէտք է ներես ինձ, աղաչում եմ քեզ։ Մոռացիր եւ ներիր, ես ծեր եմ եւ տխմար։

*[Lear, Cordelia, the Doctor and Servants exit.]*

KNIGHT.
Ճի՞շտ եղաւ, տէր իմ, Կորնուալի դուքսի այսպէս սպանուելը։

KENT.
Բոլորովին ճիշտ։

KNIGHT.
Ո՞վ է նրա զօրքի հրամանատարը։

KENT.
Ինչպէս պատմում են, Գլոստերի կոմսի ապօրէն որդին։

KNIGHT.
Ասում են՝ Էդգարը՝ աքսորուած որդին, Քէնտի կոմսի հետ գերմանիայումն է։

KENT.
Տարբեր լուրեր կան. ժամանակ է այժմ զգոյշ լինելու։ Պետութեան զօրքը մեծ արագութեամբ առաջանում է։

KNIGHT.
Այնպէս է թւում, որ հանդիպումը արիւնռուշտ կը լնի։ Մնաք բարով, տէր։

*[Exits.]*

KENT.
Յատակագիծս եւ նպատակս մօտենում են այժմ իրենց կատարման՝ կամ լաւ եւ կամ վատ՝ նայելով այսօրուայ ճակատամարտին։

*[Exits.]*

][][

## ACT V. SCENE I.

Camp of the British Forces near Dover. Edmund, Regan, Officers and Soldiers enter with drum and colors.

EDMUND.
Իմացէք դուքսից, թէ նա հաստա՞տ է իր վերջին վճռին, թէ որեւէ բան չի՞ դրդել նրան փոխել իր միտքը։ Նա փոփոխամիտ եւ հակասող է։ Լուր բեր ինձ նրա վերջնական կամքից։

REGAN.
Քրոջս ծառային պէտք է մի փորձանք պատահած լինի։

EDMUND.
Երկիւղ կայ, տիկին։

REGAN.
Լաւ, ազնիւ պարոն, ձեզ քաջ յայտնի է, թէ որչափ բարիք ցանկանում եմ ձեզ։ Ասացէք։ Բայց ճիշտ։ անկեղծն ասացէք. չէ՞ք սիրում քրոջս։

EDMUND.
Յարգալից սիրով։

REGAN.
Բայց երբեւիցէ քեռայրիս շաւղով չէ՞ք գնացել արդեօք արգելուած տեղը։

EDMUND.
Ոչ, այդ կարծիքը մոլորցնում է ձեզ։

REGAN.
Ես կասկածում եմ, որ դուք նրա հետ այնպէս միացել, մտերմացել էք, որ դուք նրանն էք։

EDMUND.
Այդպէս չէ, տիկին. պատուովս երդում։

REGAN.
Ա՛խ, նա ինձ համար անտանելի է, սիրելի իմ լորդ, մի լինէք նրա հետ այդչափ ընտանի։

EDMUND.
Միամիտ եղէք։ Ահա՛ նա եկաւ իր ամուսնի հետ։

*[Albany, Goneril and Soldiers enter with drum and colors.]*

GONERIL.
[Aside.] Ես աւելի շուտ կը յօժարէի յաղթուել այս կռւում, քան թոյլ տալ իմ քրոջ, որ ինձ եւ նրան զատէ միմեանցից։

ALBANY.
Սիրեցեալ քոյր իմ, ձեզ բարի գալուստ։ [To Edmund.] Պարոն, լսո՞ւմ ես. արքան եկել է իր աղջկայ մօտ, եւ ուրիշներն էլ, որոնց վարչական մեր խստութիւնը բռնադատել է բողոքել մեր դէմ։ Ինձ անհնար է քաջ հանդիսանալ, երբ որ իմ դատը արդար մի դատ չէ։ Եթէ այս գործում մենք զէնք ենք վերցնում, սոսկ պատճառն այն է, որ ֆրանսիան ահա ասպատակել է մեր հայրենիքը։ Ոչ այն, որ նեցուկ հանդիսանում է մեր թագաւորին եւ ուրիշներին, որոնք, կարծում եմ, ունեն շատ արդար եւ լուրջ պատճառներ՝ մեր դէմ դուրս գալու։

EDMUND.
Դուքս, դուք խօսում էք շատ ազնիւ կերպով։

REGAN.
Բայց ի՞նչ կարիք կայ տրամաբանելու։

GONERIL.
Պէտք է միանանք մեր թշնամու դէմ. ներքին անձնական գժտութիւնները գործ չունեն այստեղ։

ALBANY.
Ուրեմն կազմենք ծեր ռազմիկների խորհրդակցութեամբ մեր ծրագիրը։

EDMUND.
Լաւ, մի քիչ յետոյ կը գամ ձեր վրանը։

REGAN.
Քոյր, կը գա՞ս մեզ հետ։

GONERIL.
Ոչ։

REGAN.
Շատ յարմար է. խնդրեմ եկ մեզ հետ։

GONERIL.
[Aside.] Օհօ՜, հասկացայ։ Շատ լաւ, գալիս եմ։ Նրանց դուրս գնալու ժամանակ մտնում է Էդգար՝ ծպտեալ։

EDGAR.
Թէ արժան դատէ ձեր բարձրութիւնը խօսել այսչափ խեղճ մի աղքատի հետ, թող մի բառ լսի։

ALBANY.
Ես ձեզ կը հասնեմ։ Խօսիր։ Էդմոնդ, Ռեգան, Գոներիլ եւ հետեւորդներ դուրս են գնում։

*[As Edmund, Regan, Goneril, Officers, Soldiers and Attendants exit Edgar enters, still disguised.]*

EDGAR.
Նախքան սկսէք ճակատամարտը, բացէք այս գիրը։ Թէ յաղթող լինէք, թմբուկի ձայնով կանչեցէք նրան, որ այս ձեզ բերեց։ Թէպէտ ձեր աչքին գձուծ եմ թւում, բայց մի ախոյեան հանդէս կը բերեմ, որ կ՝ապացուցէ այստեղ գրուածը։ Իսկ եթէ յաղթուէք, ձեր դերն արդէն այս աշխարհի մէջ վերջացած կը լինի։ Եւ կը դադարեն ամենայն դաւեր։ Բախտը օգնէ՜ ձեզ։

ALBANY.
Կաց, մինչեւ կ՝արդամ։

EDGAR.
Արգելուած է ինձ։ Առիթը երբ գայ, թող մունետիկը մի անգամ ձայն տայ, եւ ես դուրս կը գամ։ [Exits.]

ALBANY.
Լաւ, գնաս բարով։ Մի ակնարկ գցեմ այս նամակի վրայ։

*[Edmund enters.]*

EDMUND.
Թշնամին երեւաց։ Շարեցէք զօրքը։ Ահա թշնամու բոլոր զօրութեան մօտաւոր հաշիւը, որ ձեռք է բերուած մեծ խուզարկութեամբ։ Բայց այժմ կարիք կայ, որ շատ շտապէք։

ALBANY.
Պատրաստ ենք հասնել իր ժամանակին։ [Exits.]

EDMUND.
Ես սէր եմ ուխտել երկու քոյրերին։ Իւրաքանչիւրը ատում է միւսին, ինչպէս խայթուողը ատում է իժին։ Ո՞ր մէկին առնեմ. երկուսի՞ն, մէկի՞ն կամ թէ ոչ մէկի՞ն։ Նրանց ոչ մէկին ես չեմ ստանայ, եթէ երկուսն էլ կենդանի մնան։ Այրիին առնել՝ նշանակում է կատաղեցնել նրա քրոջը. եւ շատ դժուար է գործս գլուխ բերել, քանի դեռ ողջ է իր ամուսինը։ Առայժմ գործ դնենք նրա օգնութիւնը այս պատերազմում։ Յետոյ իր կինը, թէ նրա ձեռքից պրծնել է ուզում, թող մի ճար գտնի, որով անյապաղ վերացնի նրան մէջտեղից խպառ։ Իսկ այն գթութիւնն, որ նա միտք ունի Ցոյց տալ արքային եւ Կորդելիային։ Պատերազմից ետ, երբ մեր ձեռքն ընկնեն, նրանք չեն տեսնի գթութեան երես։ Իսկ իմ վիճակը պահանջում է այժմ ո՛չ տրամաբանել, այլ պաշտպանել ինձ։

*[Exits.]*

][][

ACT V. SCENE II.
Drums of war. A field between the two Camps. Lear, Cordelia and their Forces quickly enter and exit, followed by Edgar and Gloucester.

EDGAR.
Եկ, հայր, ընդունիր ծառի հովանին՝ որպէս բարեսիրտ մի ասպանջական. եւ աղօթք արա, որ արդարութիւնը յաղթական լինի։ Թէ ետ գամ քեզ մօտ, ես քեզ կը բերեմ սփոփիչ լուրեր։ Էդգար գնում է։

GLOUCESTER.
Տէր ընդ քեզ, պարոն։ Աղմուկ, նահանջ ներսից։ Էդգարը կրկին երեւում է։

EDGAR.
Փախչենք, ծերունի։ Տուր ինձ քո ձեռքը, փախչենք միասին։ Լիր թագաւորը պարտութիւն կրեց. նա եւ իր դուստրը ձերբակալուած են. տուր ինձ քո ձեռքը. հեռանանք, փախչենք։

GLOUCESTER.
Ին՞չ հարկ կայ փախչել աւելի հեռու։ Մարդ հէնց այստեղ էլ կարող է փտել։

EDGAR.
Դարձեալ սեւ մտքե՞ր։ Պէտք է հանդուրժել աշխարհից գնալուն, ինչպէս որ գալուն։ Հասուն լինելն է գլխաւոր բանը։ Եկ գնանք։

GLOUCESTER.
Դա նոյնպէս ճիշտ է։

*[They exit.]*

][][

ACT V. SCENE III.
The British Camp near Dover. Edmund enters, victorious, with Lear and Cordelia as prisoners.

EDMUND.
Մի քանի սպաներ թող տանեն սրանց եւ լաւ պահպանեն, մինչեւ յայտնուի գերագոյն կամքը նրանց դատողների։

CORDELIA.
Շատերն են եղել մեզանից առաջ, որոնք, լաւ դիտմամբ, արժանացել են վատագոյն բախտի։ քեզ համար միայն. ո՜վ ճնշուած արքայ, կսկծում եմ ես։ Մենակ լինէի, ես կը ծաղրէի կեղծաւոր բախտի թշնամանանքը։ Չե՞նք կարող տեսնել այն աղջիկներին եւ այն քոյրերին։

LEAR.
Ո՜չ, ո՜չ, ո՜չ, ո՜չ։ Եկ գնանք բանտը, երկուսս մենակ կ՝երգենք միասին որպէս թռչուններ՝ վանդակում փակուած։ Երբ դու ինձանից օրհնութիւն խնդրես, կը չոքեմ քո առջեւ, ներում կը հայցեմ։ Այսպէս մենք կ՝ապրենք, կ՝աղօթենք, կ՝երգենք եւ հին հեքիաթներ կը պատմենք միմեանց եւ կը ծիծաղենք այն ոսկեթեւիկ թիթեռների վրայ, ականջ կը դնենք, թէ ինչպէս խեղճուկ թշուառականներ խօսում են պալատի լուրերի մասին, մենք ինքներս էլ նրանց հետ կը խօսենք, թէ ո՞վ է շահում, ո՞վ է կորցնում, ո՞վ է բարձրանում, կամ ո՞վ է ընկնում, եւ կը բացատրենք իրերի գաղտնիքը, որպէս թէ Աստուծոյ լրտեսներն էինք։ Այսպէս մի բանտի պարիսպների մէջ կը մաշենք մեծերի խմբեր եւ դասեր, որոնք լուսնի հետ կ՝ելնեն եւ կ՝իջնեն։

EDMUND.
Հեռացրէք դրանց։

LEAR.
Ո՜վ իմ Կորդելիա, այդպիսի վսեմ զոհերի վրայ աստուածներն ինքնին կնդրուկ կը սփռեն։ Արդեօք իսկապէ՞ս գտել եմ ես քեզ։ Ով մեզ միմեանցից անջատել ուզի, պէտք է երկնքից կայծեր ցած բերի եւ

մեզ այստեղից կրակով հալածի աղուէսների պէս։ Ո՛հ, սրբի՛ր աչքերդ, բորոտութիւնը կը կրծի նրանց ե՛ւ միս, ե՛ւ կաշին, նախքան կարենան մեզ արտասուել տալ։ Այնտեղ չհասած՝ Նրանք կը մեռնեն անօթութիւնից։

*[Lear and Cordelia are led off-stage, guarded.]*

EDMUND.
Մօտ եկ, գնդապետ։ [He hands the Colonel a paper.] Լսի՛ր, այս թուղթն առ, գնա դէպի բանտ նրանց ետեւից։ Քեզ մէկ աստիճան ես բարձրացրել եմ. եթէ կատարես, ինչ որ այս թղթում քեզ հրամայուած է, փառքի շաւիղը կը բանաս դու քեզ։ Իմացիր դու այս. մարդիկ այնպէս են, ինչպէս աշխարհը. լինել փափկասիրտ անվայել բան է զինուորի համար։ Այս մեծ պաշտօնը, որ յանձնում եմ քեզ, վիճելի բան չէ. կամ ասա. «*Կ՝անեմ,*» կամ բախտդ փնտրիր այլ միջոցներով։

COLONEL.
Կ՝անեմ այդ, տէր իմ։

EDMUND.
Ուրեմն, ի գործ։ Եւ համարիր քեզ երջանիկ մի մարդ, երբ կատարել ես։ Լսիր, ասում եմ, հէնց իսկոյն եւեթ եւ կատարիր այդ, ինչպէս գրել եմ։

COLONEL.
Չեմ կարող սայլ քաշել կամ չոր խոտ ուտել, բայց թէ այդ գործը մի մարդու գործ է, ես կը կատարեմ։

*[As the Colonel exits, Albany, Goneril, Regan, Officers and Attendants all enter.]*

ALBANY.
[To Edmund.] Դուք մեծ քաջութիւն ցոյց տուիք այսօր, եւ բախտն էլ ձեզ լաւ առաջնորդեց։ Դուք գերի վերցրիք այն երկու անձին, որոնք այս ռազմի ոսոխներն էին։ Մենք պահանջում ենք նրանց ձեզանից, եւ մենք նրանց հետ այնպէս կը վարուենք, ինչպէս վայել է նրանց արժանիքին եւ մեր սեփական ապահովութեան։

EDMUND.
Յարմար դատեցի, տէր իմ, ուղարկել զառամած, թշուառ այն թագաւորին մի արգելանոց՝ պահպանութեան տակ։ Նրա տարիքը, առաւել եւս նրա տիտղոսը հմայքներ ունեն՝ ռամիկի սիրտը գրաւելու համար եւ մեր դէմ դարձնելու այն նիզակները, որոնց հրամայում ենք։ Եւ նոյն պատճառով ես ուղարկեցի նաեւ թագուհուն։ Նրանք պատրաստ են վաղը կամ այլ օր երեւալ այնտեղ, ուր ժողով կազմէք։ Բայց այժմ թափում ենք արիւն եւ քրտինք։ Ընկերը կորցրել է իր ընկերոջը. ամէնից արդար պատերազմները կռուի տապի մէջ՝ անէծքի նիւթ են այն անձանց համար, որոնք զգում են նրանց սլաքները։ Թէ՛ Կորդելիայի եւ թէ՛ հօր դատը պէտք է վճռուի մի պատշաճ տեղում։

ALBANY.
Ներեցէք, պարոն, ես այս կռուի մէջ ձեզ համարում եմ մի պարզ հպատակ, ոչ թէ մի եղբայր։

REGAN.
Մենք այդ տիտղոսը բարեհաճում ենք շնորհել նրան։ Կարծեմ թէ հարկ էր մեզնից հարցնել մեր հաճութիւնը, նախքան խօսէիք այդքան բարձրաձայն։ Նա առաջնորդեց մեր բանակներին, հրամայեց յանուն իմ, եւ իմ փոխարէն կարող է այդպէս մի հրամանատար բարձրագլուխ կանգնել եւ ձեր եղբայրը անուանել իրեն։

GONERIL.
Շատ մի տաքանաք. նա իր սեփական արժանիքներով աւելի բարձր է, քան ձեր շնորհած այդ պաշտպանութեամբ։

REGAN.
Շնորհիւ իմ տուած իրաւունքների՝ նա հաւասար է լաւագոյններին։

GONERIL.
Ամենամեծը հէնց այն կը լինէր, որ ձեզ հետ պսակուէր։

REGAN.
Ծաղրը շատ անգամ գուշակութիւն է։

GONERIL.
Կամաց, քոյր, կամաց։ Այն աչքը, որ ձեզ այդ տեսնել տուեց, մի փոքր շիլ էր։

REGAN.
Տիկին, ես լաւ չեմ. թէ ոչ՝ լի սրտից ես ձեզ կը տայի ձեր պատասխանը։ [To Edmund.] Զօրապետ, առ զօրքս եւ գերիներս եւ երկիրներս, տիրիր նրանց եւ ինձ։ Բերդն անձնատուր է։ Վկայ է աշխարհ, որ քեզ ինձ վրայ ես կարգում եմ այժմ տէր եւ ամուսին։

GONERIL.
Յոյս ունե՞ս ուրեմն տիրանալ նրան։

ALBANY.
Թոյլ տալ կամ չտալ՝ քեզնից չի կախուած։

EDMUND.
Ոչ էլ քո բարի կամքից է կախուած։

ALBANY.
Ինչպէ՞ս չէ, կիսարիւն դու թշուառական։

REGAN.
[To Edmund.] Թմբուկ զարկել տուր եւ ապացուցիր, որ իմ տիտղոսը քեզ է պատկանում։

ALBANY.
Կաց դեռ, խօսք լսիր։ Էդմոնդ, ահա քեզ ձերբակալում եմ որպէս պետական մատնիչ, դաւաճան, եւ այս ոսկեզօծ օձին էլ՝ քեզ հետ։ [Pointing to Goneril.] Գալով պահանջիդ, գեղեցիկ քոյր իմ, ես ժխտում եմ այն՝ ի շահ իմ կնոջ. երկրորդ դաշինքով նա նշանուած է այս պարոնի հետ, եւ ես՝ իր այրը, հակառակում եմ ձեր ամուսնութեան։ եթէ կամք ունէք ամուսնանալու, ուրեմն ինձ հետ սիրաբանեցէք, իմ տիկինն արդէն հարսնախօսուած է։

GONERIL.
Այս ի՞նչ կատակ է։

ALBANY.
Գլոստեր, զինուած ես։ Թող հնչէ փողը, թէ ոչ ոք դուրս չգայ՝ քո պիղծ, ակներեւ, անթիւ դաւերդ երեսիդ զարկելու, ահա իմ գրաւը։

*[Throws down his glove.]*

ALBANY [cont.]
Ես քո սրտիդ մէջ կ՝ապացուցանեմ, նախքան փշուր հաց դնեմ բերանս, թէ դու ոչնչով պակաս չես, քան այն, ինչ որ ասացի։

REGAN.
Հիւանդ եմ, հիւանդ։

GONERIL.
[Aside.] Թէ չլինէիր՝ էլ ոչ մի թոյնի չէի հաւատայ։

EDMUND.
Ահա, փոխարէնն, իմ գրաւականը։

*[Throws down his own glove.]*

EDMUND [cont.]
Թէ կայ աշխարհում որեւէ մէկը, որ ինձ դաւաճան կոչել խիզախի, նա ստախօս է սրիկայի նման։ Կանչիր քո փողով, ով որ էլ դուրս գայ նրա կամ քո դէմ, կամ բոլորի դէմ, ես կը հաստատեմ ճշմարտութիւնս եւ իմ պատիւս։

ALBANY.
Է՛յ, մի մունետիկ։

EDMUND.
Մունետի՛կ, մունետի՛կ։ Մտնում է մի մունետիկ։

ALBANY.
Յոյսդ դիր միայն քո անձի վրայ. քո զինուորներդ՝ յանուն իմ խմբուած, նոյնպէս յանուն իմ արձակուած են այժմ։

REGAN.
Հիւանդութիւնս շատ սաստկանում է։

ALBANY.
[To his guards.] Նա շատ հիւանդ է. տարէք իմ վրանս։ Ռեգանին տանում են։ Ե՛կ այստեղ, մունետիկ։ Փողը հնչեցրէ՛ք. եւ դու բարձրաձայն կարդա՛յ այս թուղթը։

OFFICER.
[Reading.] *«Եթէ կայ զօրքի շարքերում մի որեւիցէ աստիճանի տէր կամ դիրք ունեցող մարդ, որն ուզում է հաստատել Էդմոնդի՝ ինքնակոչ կոմս Գլոստերի դէմ, որ նա յանցաւոր է բազմապատիկ դաւաճանութիւններով, թող դուրս գայ փողի երրորդ հնչիւնին։ Էդմոնդը պատրաստ է ինքն իրեն պաշտպանելու։»*

EDMUND.
Հնչեցրու՛։

*[First trumpet call.]*

HERALD.
Կրկի՛ն։

*[Second trumpet call.]*

HERALD.
Կրկին։

*[At the third trumpet Edgar enters, armed for battle.]*

ALBANY.
[To the Herald.] Հարցրու նրանից իր նպատակը, թէ ինչու դուրս եկաւ այս փողի ձայնից։

HERALD.
Ո՞վ ես դու, անո՞ւնդ եւ աստիճա՞նդ։ Եւ ի՞նչ պատճառով պատասխանեցիր այս մարտակոչին։

EDGAR.
Անունս կորած է։ Դաւաճանութեան ատամը նրան կրծել, մաշել է, որդնակեր արել։ Բայց ես ազնիւ եմ, որչափ ոսոխս, որի դէմ եկայ մենամարտելու։

ALBANY.
Ո՞վ է այդ ոսոխը։

EDGAR.
Ո՞վ է այն մարդը, որ ձայն է տալիս յանուն Էդմոնդի՝ գլոստերի կոմսի։

EDMUND.
Ես եմ։ Ի՞նչ ունես դու ինձ ասելու։

EDGAR.
Դուրս քաշիր սուրդ. որ, եթէ խօսքերս խոցեն մի ազնիւ սիրտ, բազուկդ կարենայ վրէժխնդիր լինել. ահա եւ իմս։ Տես, ահա այս է պատուիս, երդմանս եւ ասպետութեանս իմ իրաւունքը։ Ես հաստատում եմ։ ընդդէմ քո ուժիդ, հասակիդ, դիրքիդ եւ բարձրութեանդ՝ հակառակ քո այդ յաղթական սրիդ։ Որ դաւաճան ես, անհաւատարիմ դէպ աստուածներդ, եղբայրդ, հայրդ. դաւադիր նաեւ այս իշխանի դէմ. եւ այդ գագաթիդ բարձրագոյն կէտից մինչ ոտքերիդ տակ կոխոտուած փոշին գորտի պէս ժահրոտ, գարշ դաւաճան ես։ Եթէ ասես՝ ոչ, այս սուրն, այս թեւը եւ ամենաքաջ իմ արիութիւնս պարտ են հաստատել քո սրտիդ վրայ, որին ասում եմ, թէ ստախօս ես։

EDMUND.
Իբր խոհեմութիւն՝ ինձ հարկաւոր էր անունդ հարցնել, բայց դէմքդ լինելով այդչափ գեղեցիկ, պատերազմասէր, եւ լեզուդ շնչելով մի ազնիւ ծագում՝ ես ուշ չեմ դարձնում այն առարկութեանց, որ կասկածանքը եւ խոհեմութիւնն ինձ թելադրում են, թէեւ կարող էի, ըստ ասպետական կարգ ու կանոնի՝ պատրուակ բերել, բայց քամահրում եմ, ես ետ եմ նետում քո գլխի վրայ դաւաճանութեան մեղադրանքներդ եւ դժոխային քո պիղծ ստութեամբ քո սիրտդ եմ ճմլում։ Դրանք շեղում են Կէտ

նպատակից եւ վէրք չեն տալիս։ Բայց այս իմ սրով ես նրանց առաջ ճանապարհ կը բանամ, ուր նրանք ընդմիշտ կը մխուեն, կը հանգչեն։ Խօսեցէ՛ք, փողեր։

*[They fight. Edmund is wounded.]*

ALBANY.
Խնայի՛ր, խնայի՛ր։

GONERIL.
Գլոստեր, սա մի թակարդ էր։ Զէնքերի օրէնքով պարտաւոր չէիր դուրս գալ անծանօթ ախոյեանի դէմ։ Դու հաղթուած չես, այլ զոհ մի դաւի եւ խաբէութեան։

ALBANY.
Տիկին, փակեցէք դուք ձեր բերանը. թէ ոչ՝ այս թղթով կը գոցեմ ես այն։ Բռնիր այս, պարոն։ Թուղթը ներկայացնում է Էդմոնդին, յետոյ՝ Գոներիլին, որ ջանք է անում խլել, բայց իզուր։ Դու, ստո՛ր, քան թէ որեւէ անուն, կարդայ սեփական քո չարութիւնը։ Մի՛ պատռիր, տիկի՛ն։ Ես նկատում եմ, որ քեզ յայտնի է։

*[He hands the letter to Edmond.]*

GONERIL.
Դիցուք՝ յայտնի է. օրէնքն իմ կողմն է, ոչ թէ քո կողմը, ո՞վ արդեօք կարող է դատապարտել ինձ։

ALBANY.
Ճիւա՛ղ, այս թուղթը ճանաչո՞ւմ ես դու։

GONERIL.
Մի հարցնիր դու ինձ, թէ ճանաչում եմ։

*[She exits.]*

ALBANY.
[To an Officer.] Հետեւիր նրան, նա յուսահատ է։ Կառավարի՛ր նրան։

EDMUND.
Բոլոր բաները, որոնց մէջ դու ինձ ամբաստանեցիր, գործել եմ, ճիշտ է, եւ դեռ աւելին, շա՜տ, շա՜տ աւելին, եւ ժամանակը կը յայտնի բոլորը, այդ անցաւ. ես էլ։ Բայց ասա, ո՞վ ես դու, դու, որին բախտը շնորհեց ինձ վրայ այս յաղթանակը։ Թէ ազնիւ ես դու, ես քեզ ներում եմ։

EDGAR.

Թող ներողութիւնը փոխադարձ լինի։ Էդմոնդ, ես արեամբ նոյնչափ տոհմիկ եմ, որչափ դու ինքդ։ Թէ աւելի եմ, ապա եւ իմ դէմ գործած մեղքերդ աւելի մեծ են։ Անունս է Էդգար, քո հօր որդին եմ։ Աստուածներն արդար են, նրանք մեր սիրած մոլութիւնները գործիք են շինում մեզ մտրակելու։ Այն մութ եւ մոլի, պիղծ անկողինը, ուր որ մեր հայրը քեզ ծնունդ տուեց, նրանից խլեց աչքերի լոյսը։

EDMUND.

Դու ճիշտ խօսեցիր, ճշմարիտ է այդ։ Անիւը բոլորեց ամբողջ շրջանը, եւ ես այստեղ եմ։

ALBANY.

[To Edgar.] Ինձ երեւում էր, որ լոկ քայլուածքդ կռահել է տալիս արքայավայել մի ազնուութիւն։ Պէտք է գրկեմ քեզ. թող ցաւ ու վիշտը սիրտս պատառի, թէ երբեւիցէ ատել եմ ես քեզ եւ կամ քո հօրը։

EDGAR.

Յարգելի իշխան, ես այդ լաւ գիտեմ։

ALBANY.

Ո՞ւր էիր թաքնուած, ինչպէ՞ս իմացար հօրդ պատահած դժբախտութիւնը։

EDGAR.

Խնամելով նրանց, միլորդ։ Լսեցէք մի կարճ պատմութիւն, եւ երբ վերջանայ, ա՜խ, երանի՜ թէ սիրտս տրաքուի։ Որպէսզի խոյս տամ այն արիւնահեղ իմ դատավճռից, որ այնքան մօտից հալածում էր ինձ, հագայ մի խենթի ցնցոտիները եւ ստանձնեցի այնպիսի մի ձեւ, որ շներն անգամ խոյս էին տալիս։ Եւ այս զգեստով գտայ իմ հօրս՝ արիւնաշաղախ իւր օղակներով անգին ակները դեռ նոր կորցրած. իսկոյն ես դարձայ նրա ուղեցոյցը եւ առաջնորդը, մուրացի նրա համար, փրկեցի նրան անյուսութիւնից եւ ամենեւին ես չյայտնեցի իմ ով լինելս, բայց կէս ժամ առաջ, երբ զինուած էի, երբ որ մեծայոյս, թէեւ ոչ վստահ յաղթութեան վրայ՝ նրան խնդրեցի, որ շնորհի ինձ իր օրհնութիւնը, հայնժամ ծայրեծայր պատմեցի նրան թափառաշրջիկ պանդխտութիւնս բայց նրա սիրտը՝ արդէն կիսաբեկ։ Երկու ծայրայեղ կրքերի մէջտեղ՝ ցնծութիւն եւ վիշտ, ժպտալով պայթեց։

EDMUND.

Քո այդ խօսքերը սիրտս շարժեցին, եւ գուցէ նրանք արդիւնք ընծայեն, բայց շարունակիր, այնպէս է թւում, որ ուրիշ բաներ ունես պատմելու։

ALBANY.

Եթէ աւելի տխուր բաներ կան, քեզ համար պահիր, այսքանը լսելուց ես արդէն մօտ եմ ցաւից լուծուելու։

EDGAR.
Սա մի վերջակէտ կարող էր թուալ այն անձանց համար, որ վիշտ չեն սիրում. բայց կայ մի այլը, որ պէտք է լցնի մի չափ, որ արդէն արտազեղւում է, եւ գերազանցի ծայրայեղն անգամ։ Մինչդեռ գոռալով ես ողբում էի, վրայ հասաւ մի մարդ։ Նա ինձ տեսել էր ամենանուաստ մի վիճակի մէջ եւ խորշած իմ պիղծ ընկերութիւնից. սակայն այս անգամ տեսնելով, թէ ով է նա, որ այսքան շատ տառապանք է կրել, իր ուժեղ թեւերը փաթաթեց վզիս եւ այնպէս ոռնաց, կարծես ուզում էր երկինքը պայթեցնել։ Նա գրկեց հօրս եւ յետոյ պատմեց Լիրի, իր մասին այնչափ սրտաշարժ մի եղելութիւն, որի նմանը ականջ չի լսէր։ Մինչդեռ պատմում էր, վիշտը սաստկացաւ, եւ կեանքի թելերն սկսան ճայթել, հէնց այդ րոպէին երկրորդ փողը հնչեց, եւ ես ուշաթափ թողեցի նրան։

ALBANY.
Ո՞վ էր այդ մարդը։

EDGAR.
Քէնտն էր, ազնիւ տէր, աքսորուած քէնտը, որ հետեւում էր ծպտեալ հագուստով այն թագաւորին, որ նրան վռնդեց, եւ կատարում էր ծառայութիւններ, որոնք վայել չեն ստրուկի անգամ։

*[Knight enters in a hurry, holding a bloody dagger.]*

KNIGHT.
Օգնութի՛ւն, օգնութի՛ւն։ Օգնութի՛ւն, հասէ՛ք։

EDGAR.
Ինչ՞ տեսակ օգնութիւն։

ALBANY.
Դէ՛հ, խօսիր, այ մարդ։

EDGAR.
Ինչ՞ է այս դաշոյնն արիւնաշաղախ։

KNIGHT.
Դեռեւս տաք է, նա դեռ ծխում է։ Նոր է դուրս եկել հէնց նրա սրտից։ Օ՛! մեռա՛ւ։

ALBANY.
Ո՞վ, մարդ, ո՞վ մեռաւ, խօսի՛ր։

KNIGHT.
Ձեր կինը, տէր իմ, ձեր կինը մեռաւ, եւ ձեր քէնին էլ հէնց նրա ձեռքով թունաւորուած է. նա

խոստովանուեց։

EDMUND.
Երկուսի հետ էլ նշանուած էի, այժմ երեքով ամուսնանում ենք նոյն րոպէի մէջ։ Մտնում է Քէնտ։

ALBANY.
Թէ ողջ, թէ մեռած՝ թող բերեն այստեղ նրանց մարմինները։

*[The bodies of Goneril and Reagan are brought in.]*

ALBANY [cont.]
Երկնային արդար այս դատաստանը թէեւ լցնում է մեզ զարհուրանքով, բայց մեր սրտերը ի գութ չի շարժում։

EDGAR.
Ահա Քէնտը, տէր։

*[Kent enters.]*

ALBANY.
Աւա՜ղ, այս նա՞ է։ Պարագաները մեզ չեն թոյլ տալիս այն բարեւներն իսկ, որ պահանջում է բարի կենցաղը։

KENT.
Եկել եմ մաղթել իմ տէր արքային յաւիտենական բարի-գիշերը։ Այստեղ չի՞ միթէ։

ALBANY.
Ինչ՞ մեծ մոռացում։ Խօսիր դու, Էդմոնդ, թագաւորն ո՞ւր է, Կորդելիան ո՞ւր է։ Քէնտ, տեսնո՞ւմ ես դու այս տեսարանը։

KENT.
Աւա՜ղ, այս ի՞նչ է։

EDMUND.
Բայց, այսուհանդերձ, Էդմոնդ սիրուած էր։ Իմ սիրոյս համար նրանցից մէկը թոյն տուեց միւսին եւ յետոյ ինքն էլ անձնասպան եղաւ։

ALBANY.
Ճիշտ այդպէս։ Ծածկեցէք նրանց դէմքերը։

EDMUND.
Հազիւ թէ կեանքս քիչ էլ շունչ ունի. եւ կամենում եմ, բնութեան հակառակ, մի բարիք գործել։ Մարդ ուղարկեցէք։ Բայց իսկո՛յն, իսկո՛յն։ Դէպի ամրոցը. գրած հրամանս մահ է սպառնում թէ արքայ լիրին, թէ կորդելիային. ա՛հ, ուղարկեցէք, քանի դեռ ուշ չէ։

ALBANY.
Վազեցէ՛ք, վազեցէ՛ք, օ՛հ, շու՛տ, վազեցէք։

EDGAR.
Ո՞ւմ մօտ, միլորդ։ [To Edmund.] Ո՞ւմն է յանձնուած։ Մի նշան տուէք, որ մեզ հնազանդեն։

EDMUND.
Լաւ մտածեցիր։ Առ սուրս եւ տուր հարիւրապետին։

ALBANY.
Դե՛հ, շու՛տ, շտապի՛ր՝ որպէս թէ կեանքդ փրկելու համար։

*[Edgar rushes off.]*

EDMUND.
Ես եւ քո կինը հրաման ենք տուել, որ կորդելիային կախի բանտի մէջ եւ մեղքը գցի հէնց նրա վրայ՝ ասելով, թէ նա յուսահատութեամբ ինքն իրեն կախեց։

ALBANY.
Թող աստուածները ազատեն նրան։

*[As Edmund is borne off Lear enters with Cordelia dead in his arms. Edgar and the Officer follow.]*

LEAR.
Ոռնացէ՛ք, ոռնացէ՛ք, ոռնացէ՛ք, ոռնացէ՛ք։ Օ՛! ի՛նչ քարեղէն մարդիկներ էք դուք։ Թէ ունենայի ձեր լեզուները եւ ձեր աչքերը, այնպէս կ՝անէի, որ կը ճարճատէր երկնի կամարը։ Օ՛! գնա՛ց յաւիտեան։ Ես ճանաչում եմ, թէ մարդ մեռա՞ծ է, թէ՞ կենդանի է. սա այնպէս մեռած է, ինչպէս այս հողը։ Տուէք մի հայելի, թէ նրա շունչը ապակին մթնացնի կամ թէ աղարտի, նա կենդանի է։

KENT.
Այ՞ս է աշխարհի խոստացուած վերջը։

EDGAR.
Թէ մի պատկե՞ր է այն արհաւիրքի։

ALBANY.
Կործանուի՛ր, պրծի՛ր։

LEAR.
Փետուրը շարժում է։ Նա կենդանի՛ է։ Եթէ ողջ լինի, այդ այնպիսի մեծ երջանկութիւն է, որ հատուցումն է բոլոր վշտերիս, որ ցարդ կրել եմ։

KENT.
[Kneeling before Lear.] Օ՛, իմ բարի տէր։

LEAR.
Հեռացի՛ր, խնդրեմ։

EDGAR.
Ազնիւ Քէնտն է սա, ձեր բարեկամը։

LEAR.
Թող կրակ թափուի բոլորիդ գլխին, դուք, մարդասպաննե՛ր, եւ դաւաճաննե՛ր։ Ես կարող էի ազատել նրան. բայց այժմ այլեւս գնաց յաւիտեան։ Կորդելիա՛, Կորդելիա՛. սպասիր մի քիչ։ Հա, ի՞նչ ես ասում։ Նրա ձայնը միշտ անոյշ է եղել եւ հեզ եւ խոնարհ. կնոջ համար այդ թանկագին բան է։ Ես սպանեցի այն սրիկային, որ կախում էր քեզ։

OFFICER.
Ճիշտ է, սպանեց։

LEAR.
Չսպանեցի՞, մարդ։ Ես օր եմ տեսել, երբ իմ պատուական սայրասուր թրով ես այն բոլորին կը ցատկեցնէի։ Այժմ ծերացել եմ. այսքան ցաւերը ինձ փչացրել են։ [To Kent.] Ո՞վ ես դու։ Աչքերս այնքան էլ լաւ չեն։ Քեզ ուղիղն ասեմ։

KENT.
Թէ կայ երկու մարդ, որոնց վրայ բախտը փորձել է բոլոր իր կատաղութիւնը՝ անչափ սիրելով եւ անչափ ատելով, նրանցից մէկին տեսնում էք ահա։

LEAR.
Աչքս մթնած է։ Քէնտը չե՞ս արդեօք։

KENT.
Ձեր ծառայ Քէնտը։ Ո՞ւր է ձեր Կայուս սպասաւորը։

LEAR.
Նա մի լաւ մարդ է, կարող եմ խօսք տալ՝ լաւ գիտէ զարկել եւ այն էլ՝ շատ շուտ։ Մեռել է, փտել։

KENT.
Ոչ, իմ բարի տէր. ես հէնց այդ մարդն եմ։

LEAR.
Իսկոյն կը տեսնեմ։

KENT.
Որ հէնց ձեր բախտի յեղաշրջութեան եւ դժբախտութեանց առաջին օրից հետապնդել է ձեր մռայլ քայլերին։

LEAR.
Բարով էք եկել։

KENT.
Ո՛չ ես, ո՛չ այլ ոք։ Ամէն ինչ մութ է, մռայլ, մահացու, ձեր մեծ աղջիկներն ինքնին կանխեցին իրենց վճիռը, եւ նրանք մեռան յուսահատութեամբ։

LEAR.
Այո՛, կարծում եմ։

ALBANY.
Նա չի իմանում, թէ ինչ է խօսում։ Իզուր ենք գալիս իր աչքի առաջ։

EDGAR.
Բոլորովին զուր։

*[Second Officer enters.]*

SECOND OFFICER.
Տէր, Էդմոնդը մեռաւ։

ALBANY.
Այս պարագայում կարեւոր չի այդ։ Դուք, ազնիւ լորդեր եւ բարեկամներ, լսեցէք մեր կամքը։ Ամէն սփոփանք, որ կարող ենք տալ այս մեծ անբախտին, պէտք է տրուի։ Իսկ մենք վճռել ենք, քանի դեռ ողջ է այս վեհ ծերունին, վեհապետական մեր իշխանութիւնը կրկին նրան տալ։ [To Kent and Edgar.] Իսկ դուք կը ստանաք ձեր իրաւունքները՝ հաւելումներով եւ փառք ու պատուով, որոնց իսկապէս դուք արժանի էք։ Ամէն բարեկամ իր բարի գործի վարձը կը ստանայ, ամէն թշնամի՝ իր յանցանքների քաւութեան բաժակը։ Օ՜! տեսէ՛ք, տեսէ՛ք։

LEAR.
Եւ իմ խեղճ խենթը կախուա՜ծ ու խեղդուա՜ծ։ Ո՜չ, ո՜չ, կեանք չկայ։ Ինչո՞ւ շունը, ձին կամ մուկը ապրեն, իսկ դու չշնչես։ Օ՜! էլ չես դառնա՜յ։ Երբե՛ք, երբե՛ք, երբե՛ք, երբե՛ք, երբե՛ք։ Խնդրեմ, բաց արէք իմ այս կոճակը. շնորհակալ եմ։ Տեսնո՞ւմ էք սրան։ Նայեցէք սրան, տեսէք շրթունքը։ Նայեցէք, նայեցէք։

*[Lear dies.]*

EDGAR.
Նա ուշաթափուեց։ Տէ՛ր իմ, օ՜հ, տէ՛ր իմ։

KENT.
Պայթի՛ր, սիրտ պայթի՛ր. պայթիր, խնդրում եմ։

EDGAR.
Տէր, բաց քո աչքերը։

KENT.
Մի՛ տանջէք հոգին, օ՜հ, թողէ՛ք անցնի։ Ով որ կամենայ այս դառն աշխարհի տանջող անուի տակ աւելի երկար տարածել նրան, նրա թշնամին է։

EDGAR.
Այո, գնացել է։

KENT.
Զարմանալի է, որ այսքան դիմացաւ. բռնի էր ապրում։

ALBANY.
Տարէք այստեղից, մեր այժմեայ գործը ընդհանուր սուգ է։ [To Kent and Edgar.] Ո՜վ դուք, իմ հոգուս բարեկամները, կառավարեցէք այս պետութիւնը, արիւնաշաղախ այս տէրութիւնը։

KENT.

Տէր իմ, ես շուտով մի ճամփորդութիւն պէտք է կատարեմ. տէրս ինձ կանչում է, եւ ես չպէտք է նրան ասեմ՝ ոչ։

ALBANY.

Պէտք է վշտալից այս ժամանակի ծանր բեռան տակ համբերող լինենք։ Ասենք այն, ինչ որ սրտում զգում ենք, ոչ թէ այն, ինչ որ պէտք է ասէինք։ Ամէնից ծերը ամէնից աւելի տառապանք կրեց. մենք, որ կրտսեր ենք, ո՛չ այնքան կը տեսնենք, ոչ այնքան կ՝ապրենք։ Թաղման մարշ։ Բոլորը դուրս են գնում։

[FIN]

]()[

## TRANSLATION BY LILIT "BABA" YAGIAN (1978)

